

# ԲՈԼՈՐԻՆ, ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՋՈԿԱՏՆԵՐԻՆ ՈՒ ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐԻՆ

***(Պիոներական ջոկատների համամիութենական մրցության հաղթողների հավաքի դիմումը)***

Դեպի պիոներական դրոշները, հավսա՜ր...

Մենք՝ միութենական տասնհինգ ռեսպուբլիկաների հաղթող ջոկատների պատվիրակներս, որ հավաքվել ենք արևավառ «Արտեկում», դիմում ենք ձեզ, մեր պատանի հասակակիցներ, առաջարկելով շարունակել պիոներական ջոկատների մրցությունը նաև այս ուսումնական տարում։

Լավագույն ջոկատի համար ծավալված համամիութենական մրցությունը համախմբել է մեզ, է՛լ ավելի ամրապնդել պիոներական բարեկամությունը։ Մենք մեր ավագ ընկերներից՝ կոմունիստներից և կոմերիտականներից սովորել ենք ապրել ու աշխատել կոմունիստաբար։ Պիոներական ջոկատները լավ ու օգտակար շատ գործեր են կատարել, ստեղծել են ընդհանուր պարտադիր ուսուցման բազմաթիվ պոստեր։ Հետաքրքրական նյութեր են հավաքել «Կարմիր հետախույզների» ջոկատները։ Պիոներական դրուժինաներում երևան են եկել սահմանապահների, բանակի ու նավատորմի պատանի բարեկամների ջոկատներ, «Պիոներական ճառագայթներ ու լապտերիկներ»։

1964 թվականի հունվարին լրանում է 40 տարին այն օրից, երբ կոմերիտմիությանը և պիոներական կազմակերպությանը շնորհվեց Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը։ Մենք առաջարկում ենք պիոներական ջոկատների մրցությունը նվիրել այդ նշանակալից տարեթվին։ Մրցության նշանաբանն է՝

«ԼԵՆԻՆԻ ԱՆՈՒՆԸ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻՍ ՍՐՏՈՒՄ Է, ՄԵՐ ՆՎԻՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԻԱՅԻՆ՝ ԿԱՊԱՑՈՒՑԵՆՔ ԳՈՐԾՈՎ»։

Թող որ պիոներական ջոկատները այնպես գործեն, որ յուրաքանչյուր պիոներ սովորի ապրել Իլյիչի օրինակով, դառնա իսկական կոմունիստ-լենինյան, սրբությամբ կատարի պատանի պիոներների օրենքները։

Այն ամենը, ինչ կապված է Լենինի անվան հետ, անսահմանորեն սուրբ ու նվիրական է պատանի պիոներների բոլոր սերունդների համար։ Յուրաքանչյուր դպրոցում ստեղծենք լենինյան սրահներ, թանգարաններ կամ անկյուններ։ Թող յուրաքանչյուր ջոկատ ուսումնասիրի Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը, կոմունիստական պարտիայի, սովետական ժողովրդի, իր քաղաքի, գյուղի, կոլտնտեսության պատմությունը։ Սրբությամբ մեծարենք այն մարդկանց հիշատակը, ովքեր իրենց զոհաբերել են մեր երջանիկ մանկության համար, լինենք մեր ազատության ու երջանկության համար զոհված հերոսների հուշարձանների ու շիրիմների հոգատար պահպանողներ։ Մենք հուսով ենք, որ այդ գործում մեզ կօգնեն կոմունիստներն ու կոմերիտականները, աշխատանքային հերոսները, որոնք ապրում և աշխատում են լենինաբար, կոմունիստաբար։

Վ. Ի. Լենինը աճող սերունդներին կտակել է միշտ սովորել, սովորել կոմունիզմ կառուցել։ Մեր գլխավոր աշխատանքը ուսումն է։ Բուռն ավյունով սովորելը պիոներներիս սրբազան պարտքն է։ Մենք գիտենք, որ միայն միլիոնների աշխատանքով կարելի է կոմունիզմ կառուցել։ Եվ քանի որ մեր երկիրը մի վիթխարի կառույց է, թող յուրաքանչյուր ջոկատ գտնի իրեն հետաքրքրող գործեր։ Սպորտհրապարակների ու ստադիոնների կառուցումը, մետաղի ջարդոնի հավաքումը, դիդակտիկ նյութերի պատ-



ՆՈՅԵՄԲԵՐ
№ 11 1963 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

րաստումը, աշխատանքը արհեստանոցներում, օգնությունը մեծահասակներին՝ ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, բարձր բերք աճեցնելը՝ այս ամենը մեր գործն է։ Այս տարվա գարնանը Ն. Ս. Խրուշչովը, Մոսկվայի բնակելի նոր շրջանները դիտելիս, պիոներներին ու դպրոցականներին խորհուրդ տվեց է՛լ ավելի ակտիվորեն դառնալ «կանաչի բարեկամներ»։ Եկեք յուրաքանչյուր դրուժինայում ստեղծենք «կանաչ պարեկներ», մեր հայրենիքը զարդարենք այգիներով, զբոսայգիներով, ծաղկանոցներով, պահպանենք բնությունը։

Բարեկամնե՛ր, եկեք պիոներական գործողության գոտիներում այնպես աշխատենք, որ ուրախանան մեր հայրերն ու մայրերը, եղբայրներն ու քույրերը, որ աշխույժ և հետաքրքրական դառնա մեր պիոներական առօրյան։ Ջերմորեն սիրենք սպորտը։ Թող միշտ ուղեկցեն մեզ երգն ու գիրքը։ Հպարտանանք սովետական գիտության ու տեխնիկայի նվաճումներով։ Թիմուրական հոգատարությամբ շրջապատենք բոլոր այն ընտանիքներին, որոնց որդիները մեկնել են շինարարական կառույցներ ու խոպան հողեր, ծառայում են սովետական բանակում։ Դառնանք հարվածային կառույցների բարեկամները։ Երկրի նոր շրջանների պիոներներին օգնենք կահավորելու դպրոցները, մանկապարտեզները, ակումբները։ Ամեն բանով օգնենք գյուղի պիոներներին։

ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԸ, ահա մեր օրենքը։ Եթե դատարկ է մնացել աշակերտական նստարանը՝ ջոկատը ահազանգ է տալիս։ Եթե մեր ընկերոջը իրենց ցանցի մեջ են գցել տերտերներն ու աղանդավորները, ջոկատն անտարբեր չի մնում, պայքարում է մինչև հաղթանակ։ Երես չդարձնենք ծույլերից ու անբաններից, կարգապահությունը խախտողներից, նրանց օգնենք դառնալու իսկական պիոներներ։ Պիոները պատասխանատու է ջոկատի համար, իսկ ջոկատը՝ բոլոր երեխաների համար։ Մեր ուժը բարեկամության մեջ է։ Թող որ յուրաքանչյուր ջոկատ դառնա իսկական մարտական ջոկատ։ Ձանձրույթն ու անտարբերությունը մեր թշնամին են։

«Յոթնամյակի արբանյակ» ջոկատնե՛ր, դուք եք մրցության նախաձեռնողները։ Այնպես գործեք, որ յուրաքանչյուր դրուժինայում բազմապատկվի «Յոթնամյակի արբանյակ» ջոկատների թիվը։ Առջևում դեռ կան գրավիչ և հետաքրքրական շատ գործեր։ Ուրեմն, անհրաժեշտ է ավելի շատ հնարամտություն, նախաձեռնություն և շնորհք։

1963 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 2-ին բոլոր ջոկատները դուրս են գալու համամիութենական մրցության ստարտի։ Մրցությունը ավարտվելու է 1964 թվականի մայիսի 19-ին։

Թանկագին բարեկամնե՛ր, մենք ապրում ենք հիասքանչ ժամանակներում։ Մեր ստեղծարար ժողովուրդը նվաճում է տիեզերքը, հնազանդեցնում գետերը, յուրացնում մեր երկրի հարստությունները։ Մեծահասակների հետ մենք ենք կառուցելու կոմունիզմը և ապրելու նրա օրոք։ Պատրաստվենք արժանավայել շարունակելու մեր հայրերի ու մայրերի, մեր ավագ եղբայրների ու քույրերի գործերը։

Հարազատ կոմունիստական պարտիային, մեր մարտական առաջնորդին՝ Լենինյան կոմերիտմիությանը, խոսք ենք տալիս՝ սովորել լենինաբար, աշխատել լենինաբար, մեր հիասքանչ հայրենիքը սիրել այնպես, ինչպես այն սիրում էր մեր թանկագին Իլյիչը։

Կոմունիստական պարտիայի գործի պայքարին մի՛շտ պատրաստ



# ԼԵՌՆԵՐՈՒՄ

Ն. ԽՈՋԱ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Այս դեպքը պատահել է ռևոլյուցիայից առաջ: Վլադիմիր Իլյիչ Լենինն այն ժամանակ ապրում էր արտասահմանում, Պորոնինո ավանում:

Ամառը. շրջապատված բարձր, գեղեցիկ լեռներով. Լենինին դուր էր գալիս. որովհետև նա սիրում էր լեռներում զբոսնել:

— Նման զբոսանքները,— հավաստացնում էր նա,— օգնում են ինձ, որ լավ աշխատեմ:

Որոշ ժամանակ ապրելով Պորոնինոյում, Լենինը որոշում է ուղևորվել դեպի լեռները: Այդ մասին իմանում է մի լեհ ռևոլյուցիոներ և Լենինին ասում է.

— Թույլ տվեք ուղեկցել ձեզ, Վլադիմիր Իլյիչ: Այս լեռներում ես շատ եմ եղել և գիտեմ այստեղի բոլոր արահետներն ու ուղիները...

Լենինին, իհարկե, դուր է գալիս, որ ինքը այդպիսի լավ ուղեկից կունենա: Իսկ Բագոցկին՝ լեհ ռևոլյուցիոները, սկսում է պատմել.

— Այնտեղ մի այնպիսի գագաթ կա... այնպիսի՜ գագաթ... Ա՜յ թե այնտեղ բարձրանայինք հա՜...

— Իսկ ինչո՞վ է լավ այդ գագաթը,— հետաքրքրվում է Լենինը:

— Այնտեղից մի զարմանալի տեսարան է բացվում, պարզապես հեքիաթային տեսարան: Առանձնապես գեղեցիկ է արևածագի ժամանակ:

— Որոշված է,— ասում է Լենինը:— Վաղը առավոտյան մենք կլինենք այդ գագաթին և կդիտենք լեռնային արևածագը:

Շաբաթ օրը երեկոյան Լենինն ու Բագոցկին մտնում են մի փոքրիկ լեռնային գյուղակ: Այստեղ, մի խրճիթում, լեռան հենց ստորոտում, նրանք մնում են գիշերելու:

— Առավոտյան ժամը չորսին կսկսենք վերելքը,— ասում է Բագոցկին:— Արևածագին արդեն գագաթին կլինենք:

— Միայն թե քնով չընկնենք,— անհանգստանում է Լենինը:

— Քնով չենք ընկնի: Ես պայմանավորվել եմ խրճիթի տիրոջ հետ: Նա կարթնացնի...

— Այդ դեպքում, բարի գիշեր:

— Բարի գիշեր, Վլադիմիր Իլյիչ...

Առաջինն արթնացավ Լենինը:

Անպայման, աղջամղջային լուսաբացը հազիվհազ ներս էր թափանցել խրճիթի փոքրիկ լուսամուտից: Բարակ միջնապատից այն կողմ լսվում էր տանտիրոջ անվրդով խռմփոցը: Լենինը նայեց ժամացույցին և մի ակնթարթում վեր թռավ:

— Քնով ենք ընկել: Անպատասխանատվություն: Ժամը հինգն է:

Բագոցկին էլ վեր թռավ: Հայհոյելով տանտիրոջը՝ նա շտապ հագավ բաճկոնը:

Վերելքը սկսվեց ուշացումով: Մանր անձրև էր կաթկթում: Կանաչ գետնի վրա կոշիկները սահում էին, ոտքերի տակից անընդհատ քարեր էին թափվում:

Շուտով Բագոցկին կանգ առավ և հուսահատ տարածեց ձեռքերը:

— Արևածագին չենք հասնի... խաբեց մեզ տանտերը:

— Ոչ թե տանտերը, այլ մենք ինքներս ենք մեղավոր,— բարկացած առարկեց Լենինը:— Ինքներս չկարողացանք ժամանակին արթնանալ: Ամո՛թ:

— Թող մեղավոր ոչ թե տանտերը, այլ ինքներս լինենք,— տխուր համաձայնեց Բագոցկին:— Բայց այսօր արևածագը լեռներում մենք չենք տեսնի: Չենք հասցնի բարձրանալ...

— Իսկ դեպի այդ գագաթը ավելի կարճ ճանապարհ չկա՞...

— Կա. ես երեք անգամ գնացել եմ այդ ճանապարհով, բայց...

— Նշանակում է, ամեն ինչ դեռ կորած չէ,— ուրախացավ Լենինը:— Ցույց տվեք ձեր կարճ ճանապարհը:

— Ես ձեզ չեմ կարող այդ ճանապարհով տանել:

— Իսկ ինչո՞ւ:

— Շատ վտանգավոր ճանապարհ է... Այնտեղ, լեռնանցքի մոտ, անդունդի վրայով անցնող մի արահետ կա... երեսուն քայլ պետք է գնալ անդունդի եզրով...

— Բայց դուք, դուք հո գնացե՞լ եք այդ արահետով:

— Գնացել եմ...

— Այդ դեպքում ժամանակ չկորցնենք: Գնանք դեպի լեռնանցքը:

— Ո՛չ, ես թույլ չեմ տա, որ դուք ձեր կյանքը վտանգի ենթարկեք:

—Դե, ես ինքս էլ կյանքս դատարկ տեղը վտանգի չեմ ենթարկի։ Պարզապես ցանկանում եմ տեսնել այդ զարմանալի արահետը։

— Այդ արդեն ուրիշ հարց է, — հանգստացավ Բագոցկին։ — Հաճույքով ցույց կտամ...

Շուտով նրանք մոտեցան արահետին, որի վրայով կարելի էր առաջ շարժվել միայն կողքանց, մանրիկ քայլերով, մեջքով սեղմվելով ուղղաձիգ ժայռին։

— Տեսնո՞ւմ եք ինչպիսին է։ Այստեղով դուք չեք անցնի, — ասաց Բագոցկին։

— Իսկ դո՞ւք, դուք կանցնե՞ք։

Բագոցկին Լենինի խոսքերում կասկածանք զգաց։

— Ահա, դե տեսեք. եթե չեք հավատում։



Լենինը դեռ գլխի չէր ընկել, թե ինչ է պատահել, երբ նրա ուղեկիցը շարժվեց վտանգավոր ճանապարհով։

Մեջքով սեղմվելով ժայռին, գլուխը շուռ տալով, որպեսզի չնայի անդունդին, Բագոցկին հազիվ նկատելի մանրիկ քայլերով առաջ էր շարժվում նեղլիկ արահետով։

«Լավ էր, որ ես համոզեցի Վլադիմիր Իլյիչին, —մտածում էր Բագոցկին։ Այժմ նա ինքը կտեսնի, որ այս ճանապարհը իրեն համար չէ...»

Երբ Բագոցկին հաղթահարեց ամենադժվարին տեղը, թեթևացած շունչ քաշեց, ետ նայեց...և սառեց. քիչ մնաց անդունդը գլորվեր. նրա հետևից արահետով քայլում էր Լենինը։ Նա անցել էր արդեն երկու-երեք մետր, իսկ առջևում ընկած էր դեռ երկար, վտանգավոր ճանապարհը։

Հանկարծ Լենինը կանգ առավ, մեջքն ավելի ամուր սեղմեց ժայռին։ Սարսափից Բագոցկու շունչը կտրվեց։ Նա հասկացավ, թե ինչ պատահեց։ Լենինը մոռացել էր, թե ինչքան վտանգավոր է լեռներում անդունդին նայելը։ Դրանից սկսում է գլխապտույտ առաջանալ։

—Ե՜տ դարձեք, ե՛տ,-գոռաց Բագոցկին։

Բայց Լենինը ցույց էլ չտվեց, թե լսել է իր ուղեկցի կանչերը։ Նա էլի մի քանի վայրկյան կանգնեց ու նորից առաջ շարժվեց։ Առանց շտապելու, զգուշությամբ, քայլ առ քայլ նա մոտեցավ արահետի ծայրին։

Եվ ահա վտանգավոր տեղն անցել էր։ Եվս մի րոպե, և Լենինը կանգնած էր Բագոցկու կողքին։

— Հիմա մենք կհասնե՞նք արևածագին,— գործնականորեն հարցրեց նա։

— Կհասնենք,— հաստատեց Բագոցկին և, հիացմունքով նայելով Լենինին, ավելացրեց.— Երբ ես առաջին անգամ անցա այս արահետով, վախից մոտ մի ժամ պառկած մնացի այն թփի տակ։

— Դե թողեք այդ,— քմծիծաղեց Լենինը։— Դրա համար չենք սողացել այստեղով, որ թփերի տակ պառկենք։ Գնա՜նք։

Եվ նրանք առաջ շարժվեցին։

Հազիվ էին նրանք ոտք դրել լեռան գագաթը, երբ հանկարծ արեգակի առաջին ճառագայթները միանգամից ճեղքեցին վաղորդյան մշուշը, ողողեցին այն, ու հեռվում լեռների ձյունե գլխարկները մի ակնթարթում վարդագույն դարձան, թփերի ու խոտերի վրա փայլփլելով թրթռացին ցողի կաթիլները և, կարծես մեկի հրահանգով, տերևների միջից, համերաշխորեն, ամբողջ ձայնով սկսեցին երգել թռչունները...

Մի ժամ հետո Լենինն ու Բագոցկին բռնեցին վերադարձի ճանապարհը։

— Այժմ շտապելու բան չունենք,— նկատեց Բագոցկին։— Կվերադառնանք անվտանգ ճանապարհով։

— Ինչ վերաբերում է ինձ,— ասաց Լենինը,— ապա ես մտադիր եմ վերադառնալ նույն ճանապարհով, նույն արահետով...

— Վլադիմիր Իլյիչ,— աղերսեց Բագոցկին,— հիմա բոլորովին դրա կարիքը չունենք:

— Դուք չունեք, բայց ես ունեմ...

— Դե ի՞նչ կարիք ունեք, մի բացատրե՛ք:

— Հետո լրիվ կբացատրեմ: Միայն թե այն կողմում:

Որքան էլ Բագոցկին համոզեց Լենինին, ոչինչ չօգնեց: Վլադիմիր Իլյիչը չլսեց, գնաց հին ճանապարհով:

Ահա և անդունդի վրայով անցնող արահետը:

Այս անգամ առաջինը ես կգնամ,— հայտարարեց Լենինը ու վճռականորեն առաջ շարժվեց:

Երբ Վլադիմիր Իլյիչը մոտեցավ արահետի ամենանեղ տեղին, Բագոցկին սարսափից նույնիսկ աչքերը փակեց: Իսկ երբ նա նորից բաց արեց աչքերը, Լենինն արդեն բարեհաջող կերպով մոտենում էր անցման վերջին:

— Ձեր հերթն է,— ձայնեց նա Բագոցկուն:

Բագոցկու անցումը ևս բարեհաջող ավարտվեց: Վլադիմիր Իլյիչը սեղմելով նրա ձեռքը, ասաց.

— Շնորհակալություն սքանչելի զբոսանքի համար: Ամեն ինչ հիանալի էր: Պարզապես զմայլելի էր:

— Դե այժմ դուք ինձ ասացեք, ինչո՞ւ որոշեցիք այս ճանապարհով վերադառնալ: Մի՞թե ձեզ համար սարսափելի չէր:

— Ես հենց դրա համար էլ վերադարձա այս սոսկալի ճանապարհով, որովհետև ինձ համար սարսափելի էր: Այդ պատճառով միայն...

Եվ, նկատելով Բագոցկու տարակուսանքը, բացատրեց.

— Ռևոլյուցիոները իրավունք չունի թույլ տալ, որ վախը իշխի կամքին: Մեզ, սիրելիս, անհրաժեշտ է մեր մեջ կամք դաստիարակել ամեն օր, ամեն ժամ... Ամենուրեք... Շարունակ...

Նա մի փոքր լռեց, ապա կռացավ ու մի քանի հասարակ, կապույտ ծաղիկներ պոկեց:

— Սրանք Նադեժդա Կոնստանտինովնային,— ցածր ձայնով ասաց Լենինը:— Նա դաշտային ծաղիկներ շա՜տ է սիրում...



# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ Թանգարանում

Մոսկվայի կենտրոնում, Գորկու անվան փողոցի վրա, որը մայրաքաղաքի գլխավոր ու ամենաաշխույժ փողոցներից մեկն է, գտնվում է մի գեղեցիկ շինություն: Այս շինությունը քաջ հայտնի է յուրաքանչյուր մոսկվացու, իսկ մայրաքաղաք ժամանած ամեն մի ուղևոր կամ էքսկուրսանտ իր պարտքն է համարում լինել այստեղ, որովհետև այդ շենքում՝ ՍՍՌՄ ռևոլյուցիայի թանգարանում, ի մի են



Մոսկվայի ռևոլյուցիայի թանգարանը



Վլադիմիր Իլյիչ Լենինը Սմոլնիում

հավաքված հարյուրավոր ու հազարավոր լուսանկարներ, փաստաթղթեր, կտավներ, քանդակներ ու բազմաթիվ այլ նյութեր, որոնք պատմում են մեր երկրի ռևոլյուցիոն պայքարի մասին՝ սկսած քսաներորդ դարի սկզբներից մինչև մեր օրերը:

Թանգարանը հիմնադրվել է 1924 թվականին: Տարիների ընթացքում այն հարստացել է բազմաթիվ նոր փաստաթղթերով ու նշանակալիորեն ընդարձակվել է:

Թանգարանի սրահները միշտ մարդաշատ են: Այստեղ այցելող թերուններ, ռևոլյուցիոն թեժ մարտերում ամբողջ կյանքն անցկացրած հին բոլշևիկի կողքին կարելի է հանդիպել ուսանողների ու երիտասարդների, պիոներների ու դպրոցականների, որոնք ուշադրությամբ դիտում են թանգարանի նյութերը:

Նրանց աչքի առաջ վերակենդանանում է մեր հայրենիքի ռևոլյուցիոն պայքարի հերոսական պատմությունը: Դա սովորական մի պատմություն չէ. դա մեր ժողովրդի պատմությունն է, որ 1917 թվականին բոլշևիկների պարտիայի ու նրա մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ղեկավարությամբ երկրագնդի մեկ վեցերորդ մասում տապալեց շահագործողների ու տերերի իշխանությունը և այն վերցրեց իր ձեռքը՝ մեր երկրում սանձելով բանվորների ու գյուղացիների իշխանություն:



Թանգարանի սրահներից մեկում

Այդ 1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի օրերին էր, երբ ռևոլյուցիոն «Ավրորա» հածանավը իր հրանոթների հուժկու հարվածներով ազդարարեց նոր դարաշրջանի սկիզբը:

Սրահներում ցուցադրված նյութերը պատմում են Մագնիտոգորսկի ու Կուզնեցկի շինարարների, առաջին հայրենական տրակտորի, կոմունիստական շաբաթօրյակների մասին, երբ սովետական մարդիկ մեծ խանդավառությամբ վերափոխում էին իրենց երկիրը: Այդպիսի սխրագործությունների էր նրանց կոչում կոմունիստական պարտիան՝ հանուն լուսավոր ապագայի, կոմունիզմի:

Սակայն ֆաշիստական Գերմանիայի ներխուժումը ժամանակավորապես ընդհատեց մեր երկրի խաղաղ շինարարական կյանքը: Եվ մեր ժողովուրդը միահամուռ ուժերով ոտքի ելավ թշնամու դեմ: Չորս դժվարին տարիների ընթացքում սովետական ժողովուրդը կարողացավ կործանել հիտլերյան ռազմա-

կան մեքենան ու հաղթանակով ավարտել պատերազմը:

Թանգարանում ցուցադրված բազմաթիվ նյութեր պատմում են Հայրենական Մեծ պատերազմի և սովետական հերոս ժողովրդի սխրանքների մասին: Այցելուների մեջ տեսնում ենք շատերին, որոնք կռվի ելան ու հաղթեցին, որպեսզի դուք այսօր ունենաք երջանիկ ու բերկրալից կյանք:

Թանգարանի վերջին սրահների նյութերը պատմում են արդեն մեր օրերի մասին, սովետական ժողովրդի սխրանքներով լի նոր գործերի մասին, որոնց ականատես ու՜ մասնակից ես այսօր դու, ինքդ:

Թանգարանի սրահներում զետեղված փաստաթղթերի, լուսանկարների, գեղարվեստական գործերի մասին, թեկուզ թռուցիկ պատմելու համար, թերևս տասնյակ էջեր են անհրաժեշտ: Սակայն այնուամենայնիվ կարելի է նշել դրանցից մի քանիսը, այդ թվում «Հերոսական Պլևնայան», «Ձմեռային պալատի գրոհը», «Դնեպրոստրոյի» մեծադիր կտավները, «Վ. Ի. Լենինի ժամանումը Պետրոգրադ՝ 1917 թվականի ապրիլի 3-ին», «Պըրավդայի» խմբագրությունում», «Վ. Ի. Լենինի ելույթը Մոսսովետի պլենումում՝ 1922 թ. նոյեմբերի 20-ին» նկարները, առաջին հեծյալ բանակի մարտական գնդացրային սայլակառքերից մեկը, Կուզնեցկի մետալուրգիական կոմբինատի առաջին հնոցի մոդելը, ֆաշիստական ջախջախված բանակի դրոշները, որոնք վերցվել են մեր բանակի կողմից, 1959 թվականի ապրիլի 14-ին լուսնի վրա իջեցված սովետական արքանյակի վիմպելները և այլ ցուցանմուշներ:

Ձեզանից շատերը, հավանական է, չեն եղել այս թանգարանում: Մոսկվա ժամանելիս անպայման այցելեք ՍՍՀՄ ռևոլյուցիայի թանգարանը: Այնտեղ ամեն ինչ թանկ է ու նվիրական:

*ԱԼԲԵՐՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ*



Թանգարանի սրահներից մեկում

*Լուսանկարները՝ Վ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*




*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

*ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ*

Մի հեռավոր երկիր կա,
Որ կոչվում է Աֆրիկա:
Աֆրիկայում հեռավոր,
Մի գյուղակում մեծավոր,
Հին, ծղոտե տնակում
Մի տղա է բնակվում:
Հայրը սև է, մայրը՝ սև,
Ինքը սև է, սևուսև,
Զարմանքի ու խնդումն
Եվ անունն էլ՝ Հոգուղու:

Գյուղի չորս կողմ՝ թուփ ու ծառ,
Գյուղից հեռու՝ մութ անտառ,
Իսկ անտառում՝ փիղ, վարազ,
Առյուծ, վագր ու հովազ,
Իսկ անտառում՝ կապիկներ,
Գույն-գույն, սիրուն թութակներ:

Սան էր գալիս Հոգուղուն
Մութ անտառում օրնիբուն

Չէր վախենում վարազից,
Չէր վախենում հովազից,
Չէր վախենում չար օձից,
Անգամ հզոր առյուծից,
Շա՜տ սրտոտ էր ու ճարպիկ,
Ինչպես փոքրիկ մի կապիկ:

Բայց Հոգուդուն անցած օր
Մի բան տեսավահավոր.
Մեծ, հաստաբուն ծառի մոտ
Տեսավ մի մարդ անծանոթ,
Դեմքը, մազը սպիտակ,
Աչքերը ջինջ, կապուտակ,
Կանգնել էր նա ու մոլոր
Նայում էր իր չորս-բոլոր:

Հենց որ տեսավ այդ մարդուն,
Շա՜տ վախեցավ Հոգուդուն:
Նա լսել էր իր հորից,
Նա լսել էր իր մորից,
Որ սպիտակն անպատճառ

Բայց այդ մարդը սպիտակ
Ժպտաց նրան՝ բեղի տակ:
Վախվխելով ու կամաց
Մեր Հոգուդուն մոտ գնաց:
— Ա՛յ իմ պստիկ աներկյուղ,
Ինչպե՞ս հասնեմ մինչև գյուղ,
Մոլորվել եմ ու եկել,
Եկել, անտառն եմ ընկել:

Չհասկացավ Հոգուդուն
Եվ լուռ նայեց այդ մարդուն:
— Հասկանու՞մ ես, ռուս եմ, ռուս,
Պիտի բերենք ջուր ու լույս,
Ակումբ, դպրոց էլ շինենք,
Որ դուք այնտեղ սովորեք:

Չհասկացավ Հոգուդուն,
Նորից նայեց այդ մարդուն:

— Չե՞ս հասկանում, ի՞նչ անեմ,
Նայիր, հիմա նկարեմ...—

Եվ թաց հողին նա արագ
Նկարեց մեծ մի տնակ,
Արև պայծառ, հետո միրգ,
Հետո սիրուն ու լավ գիրք,
Եվ տղաներ՝ դեմուդեմ
Գիրքն են կարդում ժպտադեմ:

Եվ հասկացավ Հոգուդուն.
— Գնանք, գնանք շուտ մեր տուն,
Այնտեղ է իմ հայրիկը,
Այնտեղ է իմ մայրիկը...—
Բռնեց ձեռքից օտարի
Ու շշնջաց.— Շու՜տ արի:

Ու գնացին հեռավոր,
Փոքրիկ գյուղը մենավոր,
Սևուկ տղան մեր արի,
Մեկ էլ քեռին այն բարի...



Ե՛վ դաժան է, և՛ շատ չար,
Չի խնայում ոչ ոքի,
Ո՛չ սիրտ ունի, ո՛չ հոգի:

Տղան ուզեց պառկել շուտ
Թփուտների մեջ թավուտ.

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

Իրաքի տերիտորիայում հոսող Դիալան միակ գետն է աշխարհում, որ մահապատժի է դատապարտվել. ընդ որում, դատավճիռը ի կատար է ածվել: Դատապարտել է ոչ այլ ոք, քան պարսկական Կյուրոս թագավորը: Մի անգամ, գետն անցնելիս թագավորը զրկվում է իր սրբազան սպիտակ ձիուց, որը խեղդվում է նրա աչքերի առջև: Զայրացած Կյուրոսը հրամայում է փորել 360 ջրանցք, որպեսզի գետը ցամաքի: Եվ Դիալան դադարում է գոյություն ունենալ շուրջ հազար տարի: Բայց ժամանակի ընթացքում անապատի ավազները չորացրին ու ծածկեցին ջրանցքները, և գետը նորից հոսեց իր նախկին հունով:

Ամենափոքրահասակ գլխավոր հրամանատարը, որը երբևէ ռազմաճակատ է ղեկավարել, երեք ամսական Բրաբանդյան Գոդվարդ 3-րդ հերցոգն էր (Բելգիա): Նա ընդամենը երեք ամսական էր, երբ հորից ժառանգեց բրաբանդյան գահը և դարձավ բանակի գլխավոր հրամանատար:

Սկսվեց պատերազմը: Հերցոգը պետք է ղեկավարեր բանակը ճակատամարտում: Նրան դրեցին ճակատամարտի վայրից ոչ հեռու գտնվող երկու ծառերից կապված օրորոցի մեջ: Այսպիսով հերցոգը անձամբ ներկա էր ճակատամարտին, և հաղթանակը, որ նվաճվեց այդ օրը, վերագրեցին նրան: Իր թագավորության 48 տարիների (1142—1190) ընթացքում նա կրում էր «քաջի» տիտղոս:

Լարզակում (Ֆրանսիա) ոչխարները, որոնց կաթից պատրաստում են ռոկֆոր պանիրը, երբեք ջուր չեն խմում: Մարդիկ ենթադրում են, որ դա վատացնում է մսի և բրդի որակը: Հովիվները չեն թողնում, որ հոտը մոտենա ջրատեղերին: Անհրաժեշտ ամբողջ ջուրը կենդանիները ստանում են արոտավայրերի խոտից:

# Սերունդների հարազատությունը

ՆՈՐԱՅՐ ԱԴԱԼՅԱՆ

«Ինչի՞ց սկսեմ, ինչպե՞ս սկսեմ, ազնիվ խոսք, չգիտեմ, ընկեր Մարգո։ Բայց պետք է մի բանից սկսեմ, որովհետև սա ավարտական քննությունն է։ Եթե նույնիսկ ավարտական քննություն չլիներ, անպայման որևէ բան կճառեի, քանի որ, ինչպես երեկ դասարանում ասացիք, ամեն մարդ պետք է իր մտքերը կանոնավոր շարադրել իմանա։ Ճիշտն ասած, ամեն բանից էլ անկախ, չգիտեմ ինչու, շատ եմ ուզում այս գործը մի կերպ գլուխ բերել և մինչև չվերջացնեմ, գրիչս ցած չեմ դնի»։

Սկիզբը կարծես թե վատ չի. ի՞նչ է պակաս որ. բարդ նախադասություններ, տառասխալներ չկան, կետադրական սխալներ էլ, երևի, չկան։

«Ես Հակոբ Սողոմոնյանն եմ...»

Չստացվեց... Ո՞վ չգիտի, որ ես Հակոբ Սողոմոնյանն եմ, ունեմ երկու անվանի հեծանիվ, սև մազեր, սև աչքեր, լավ սիրտ և ծնվել եմ 1930 թվականին՝ մեր գյուղում։

«Իմ հայրիկը հերոս է, և իմ մայրիկը՝ հերոսուհի։ Անցյալ տարի նրանք կարտոֆիլի ռեկորդային բերք հավաքեցին»։

Նորից չստացվեց... Հայրիկը և մայրիկը ամեն անգամ բարկանում են, երբ տեղի-անտեղի նրանց գովում են։ Ռեկորդային բերք հավաքեցին, ի՞ն կրակը ընկա՞ն։ Համ էլ ուրիշների հետ են հավաքել։ Թե գովում են, թող բոլորին գովեն։

«Մեր գյուղը գտնվում է լեռների մեջ...»

Չստացվե՞ց... Շատ լավ էլ ստացվեց, որովհետև 1930 թվականին հազարներն են ծնվել, որովհետև հերոսներ հազարներով կան, որովհետև լավ ընկերներ նույնպես հազարներով կան, իսկ մեր գյուղը ամբողջ աշխարհում մի հատ է։

«Ասենք, մեր գյուղը գտնվում է լեռների մեջ։ Նրա մի կողմում մութ անտառներ են, որտեղ հանդիպում է տանձ, մոշ և սև թութ։ Ամբողջ ամառ երեխաների ձեռքերն ու բերանը սև են լինում։ Երբ արահետներով անցնելիս ճյուղերի ճարճատյուն լսեք, իմացեք, որ մոտակայքում արջ կա։ Մեծերը փոքրերին և փոքրերը մեծերին արջով են վախեցնում, բայց ոչ ոք չի վախենում, որովհետև մինչև հիմա դժբախտություն չի պատահել։

Գյուղի մյուս կողմում մարգագետիններն են։ Երբ ամռան վերջին կանաչը դեղնակարմիր է տալիս, սարերը խոտի հսկա դեզեր են թվում։

Գյուղի միջով վարար գետ է հոսում, որը խնձորի այգիները շրջանցելով, գահավիժում է ցած։ Ամռան տապը երեխաները անցկացնում են այդ ջրվեժի ցողերում, նրա արծաթյա ցայտերի մեջ։

Երկինքը կապո՜ւյտ-կապո՜ւյտ է, և ջուրը այնքան սառն է, որ մի բաժակից ավելի չի խմվի։

Մի շարադրության մեջ, այն էլ ավարտական շարադրության, ինչպիսին սա է, չես ցույց տա մեր գյուղի ամբողջ հմայքը։ Այդ հմայքն այնքան մեծ է, որ շատերը ամառներ քաղաքից գալիս են այստեղ հանգստանալու։

Անցյալ տարի թվաբանությունս «երկուսով» փակեցի, ավելի շուտ՝ չփակեցի, որովհետև եթե որևէ ձևով փակեի, ընկեր Հարությունը վերջում չէր ասի. «Հա՜կոբ, Հակոբ չդարձար՝ փորձանք դարձար. ամբողջ ամառը տանը կնստես և խնդիր կլուծես»։ Նա էլի ինչ-որ բան ասաց, բայց ես չլսեցի, որովհետև փորձում էի լաց չլինել։ Եվ լաց չեղա։ Եվ ամոթ կլիներ։

Առաջին մի քանի օրը շատ դժվար էր։ Գուրգենը և Սամվելը օրը հազար անգամ ձայն էին տալիս. «Հակո՜բ, գնանք անտա՜ռ», «Հակո՜բ, գնանք սա՜րը», «Հակո՜բ, գնանք գետում լողանա՜նք», «Հակո՛բ, այս անգամ...» «Հակո՛բ, այն անգամ...» Եվ ստիպված եղա ցանկապատի դռանը կախել մեծ-մեծ գրել. «Շատ եմ ուզում գալ, բայց չեմ կարող, պարապում եմ պա-րա-պե՛լ»։

Երբ վերջապես ինձնից ձեռ քաշեցին, ես մի մեծ արկղ տեղավորեցի ընկուզենու շվաքում, գրքերս ու տետրերս դասավորեցի վրան, հին դույլերից մեկը շրջեցի և պինդ նստեցի։

Սկզբում գումարում էի և հանում, հետո ահագին բաժանեցի, իսկ երբ սկսեցի բազմապատկել, կարգին թվեր ստացվեցին։

Երբ մի օր էլ տետրի վրա հայտնվեց 2304 թիվը, ընկուզենու ճյուղերը խշշացին և մի գնդակ թրմփաց տետրիս մոտ։ Դա կարմիր, դեղին և կապույտ գծերով հրաշալի մի գնդակ էր. այդպիսին մեր կողմերում երբեք չի լինում։

— Ո՞ւմն է գնդակը,— տեղից վեր կենալով՝ հարցրեցի ես։

Ձայն դուրս չեկավ։

— Ո՞ւմն է գնդակը,— կրկնեցի ես։

Նորից ձայն դուրս չեկավ։

— Ո՞ւմն է գնդակը,— արդեն բարկացա ես և ետ շրջվեցի։

Ցանկապատի տակ ավելուկ մացառներով

փոքրիկ մի աղջիկ էր պակաս։ Երբ մեր հայացքները հանդիպեցին, աղջիկը դանդաղ կանգնեց և անսպասելի պարզվեց, որ նա փոքր չի, որովհետև ես մեծ եմ։

— Քո՞նն է գնդակը։

— Իմն է,— ասաց աղջիկը,— տա՛ր։

— Արի վերցրո՛ւ։

— Տղաները գցեցին,— արդարացավ աղջիկը։

— Ո՞ր տղաները։

— Չգիտե՛մ,— ասաց աղջիկը։ — Քաղաքից եմ եկել։

— Տեսնում եմ։ Անունդ ի՞նչ է։

— Աստղիկ։

— Քեզ աստղերի՞ց են բերել։

— Աստղերի՛ց։ Դրա համար էլ Աստղիկ եմ։ Քո անունը ի՞նչ է։



Նկ. ԱՐԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

— Հակոբ։

— Բա քեզ որտեղի՞ց են բերել։

— Մա՜... — բղավեցի ես։ — Ինձ որտեղի՞ց են բերել։

— Անտառի՜ց,— ներսից լսվեց մայրիկիս ձայնը։

— Ինձ անտառից են բերել,— հանդիսավորությամբ ասացի ես։

— Եթե անտառից են բերել, ինչո՞ւ. Անտառիկ չես։

— Ի՞նչ...

— Քեզ ուրիշ տեղից են բերել...

— Գնա՛ այստեղից,— շփոթվեցի ես։ — Չե՞ս տեսնում, պարապում եմ։

— Ես ամառը խաղում եմ։

— Ես հո քեզ նման ծույլ չե՞մ...

Նա մի պահ լռեց, հետո գնդակը արագ վերցրեց ու փախավ։

Ես նորից սկսեցի աջ ու ձախ հաշվել, և անցան շատ օրեր։ Երբեմն գլուխս բարձրացնում էի, որ տեսնեմ՝ իմ կողմը գնդակ չի՞ գալիս։ Եվ բարկանում էի Գուրգենի ու Սահակի վրա, որ նրանք իրենց կատակը չեն կրկնում։ Ախր, այդ միայն նրանք կարող էին սարքել։

Առաջ ատում էի ամեն տեսակի խնդիր, բայց հենց սովորեցի ճիշտ լուծել, ամբողջ աշխարհում դրանից ավելի հետաքրքիր բան չկար։ Գուցե և կար։ Գուցե մի քիչ ավելի հետաքրքիրը Մագելանի ճանապարհորդությունն էր, որի մասին դասագրքերից մեկում էի կարդացել։

Տերևները դեղնել էին և փողոցի մեջտեղում կապույտ ավտոմեքենա կար։ Ես դանդաղ մոտեցա ու կանգ առա։

Աղջիկը նստել էր վարորդի մոտ, իսկ մնացածները ետևում էին նստել։

Մեր հայացքները երկրորդ անգամ հանդիպեցին իրար։ Նա ուրախ ժպտաց՝ իջեցված ապակու վրայից, իսկ ես, չգիտեմ ինչու, տխրեցի։ Երևի շատ լավ բան էի գտել և կորցնում էի։

— Գնդակս քե՛զ,— կարմիր, դեղին և կապույտ գծերով հրաշալի գնդակը իմ կողմը նետելով՝ ասաց աղջիկը։— Հայրիկը նորը կառնի։

— Մյուս տարի կգա՞ս,— շփոթված հարցրեցի ես։

Նա ինչ-որ բան ասաց, բայց ես չլսեցի, որովհետև այդ պահին մեքենան աղմուկով ցնցվեց։

Ես վազեցի, առաջ անցա մեքենայից։ Մի քայլ հետո մեքենան եկավ, առաջ անցավ։ Տարածությունը մեր միջև գնալով մեծացավ, դարձավ անդունդ, և ես գնդակը ողջ ուժգին հարվածեցի։ Կարմիր-դեղին-կապույտ գնդակը բարձրացավ երկինք, երկար պտտվեց և իջավ ինչ-որ մի տեղ՝ այգիների մեջ, աշնանային տերևների վրա»։

Վե՛րջ, ընկեր Մարգո։

Թո՛ւ, թո՛ւ, թո՛ւ... Այս անգամ բոլոր առարկաները բարով-խերով փակում եմ։ Մի քանի օրից՝ մյուս տարի կլինի։ Լավ կլինենք։ Ուրախ կլինենք։ Գնդակը ձեռքից-ձեռք գցելով կիջնենք ձորը և դեմքներս կսուզենք գետի պաղ ջրի մեջ։ Հիմա վե՛րջ։



## ԻՄ ԼԱՎ ՄԱՆՈՒԿ

Մութը լույսի զանգն է տալիս.
Փողոցներն են զարթնում բանուկ.
Ավտոներ են գնում գալիս.
Մայթո՛վ քայլիր, իմ լավ մանուկ:
Շուրջդ՝ աղմուկ, շուրջդ՝ շառաչ.
Շատ գործ ունի շոֆեր քեռին.
Մի՛ վազվզիր նրանց առաջ.
Թող քար տանեն նոր շենքերին:
Կյանքում թռչող վայրկյանն է թանկ.
Ակնթարթը՝ երգ անթախիծ.
Թող գործ անեն սիրով նրանք.
Թող սլանան աջ ու ձախից:
Մի՛ թռվռա ճամփին նրանց.
Ես չեմ գտնում հարմար բառեր՝
Դու կարող ես մեկ օր հանկարծ
Մեծ տխրություն մեզ պատճառել:
Մութը լույսի զանգն է տալիս.
Ձեր փողոցն է զարթնում բանուկ.
Ավտոներ են գնում գալիս.
Մայթո՛վ անցիր, իմ լավ մանուկ:

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

## ՄԵՐ ՁՈՐԵՐԻ ՄԵՂՎԱ-ՊԱՀԸ

Դեղնած ձորն է խշշում լուռ.
Մեղմ են հոսում գետակները.
Ներս է դնում Հարութ քեռին
Մեղուների փեթակները:
Դուռն է փակում, դռան առաջ
Վառ է թողնում նա լամպերը.
Որ մի վնաս չտա հանկարծ
Դեռ չքնած արջ ապերը:
Մշուշվում է աշնան ամպով.
Չի երևում լեռան գագը.
Գյուղ է գնում ոլոր ճամփով
Մեր ձորերի մեղվապահը:
Գոհ է քեռին, բարի սրտում
Օրորում է ծով խնդումը.
Չէ՞ որ սիրով տվեց մարդուն
Ծաղկոտ ամռան քաղցրությունը:
Տերևներն են երգում անմեղ.
Մոտենում է աշնան վերջը.
Հիմա հեռու՛, հեռու՛ մի տեղ
Մեղր են ուտում Սոսն ու Պերճը.
Ճաշակում են Վաչոն, Մարոն
Մեր ձորերի բարությունը.
Եվ ասում են նրանք սիրով.
— Ապրի՛ քեռի Հարությունը:



## ՀԻՄԱ ՑՈՒՐՏ Է ՓՈՂՈՑՈՒՄ

Անց է կենում, իմ քաղաք.
Քո աշունը վառվռուն.
Էլ չեն ուզում պաղպաղակ
Մանուկները թռվռուն:
Կատարները սարերի.
Սովոր բուքի շառաչին.
Իրենց վրա այս տարի
Ձյունն են տեսնում առաջին:
Հիմա ցուրտ է փողոցում.
Զգում եմ շունչը ձմռան.
Մարդիկ փայտ են սղոցում.
Որ անկրակ չմնան:
Հագցրել եմ ես արդեն
Վերարկուն մեր Վահագնի.
Ով խելոք է, մանուկնե՛ր.
Թող տաք շորեր նա հագնի:



Նկ. ԷԴՎԱՐԴ ՋԱՓԱՐՅԱՆԻ

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

Դուք, իհարկե, հիշում եք, որ Բանանիտոն մի փոքր ճիգ գործելով, փող առավոտյան տանից դուրս եկավ քախտ որոնելու։ Որոշակի ոչ մի նպատակ նա չուներ. ուղղակի ուզում էր մի որևէ բան անել, որպեսզի ցույց տա իր վարպետությունը։

Քաղաքը նոր արթնանում էր։ Դռնապանները երկար փողրակներով փողոցներն էին լվանում և կատակում էին բանվորների հետ, որոնք հեծանիվներով գնում էին գործարան։ Դա մի ուրախ, պարզ ու անամպ ժամ էր և Բանանիտոն, կանգնելով մայթի վրա, զգաց, թե ինչպես են իր գլխում ծաղիկների նման գեղեցիկ մտքեր ծաղկում։ Նա նույնիսկ զգաց նրանց բուրմունքը, կարծես թե իրոք իր շուրջը, մայթերի վրա միլիոնավոր մանուշակներ բացվեցին։

— Այ, սա հիանալի միտք է,— հանկարծակի որոշեց նա։

Եվ առանց տեղից շարժվելու, ուղղակի գործարանի դարբասների մոտ, որտեղ որ նա կանգնած էր այդ րոպեին, նստեց մայթին, գրպանից հանեց գունավոր կավիճների տուփը և սկսեց նկարել։ Մի քանի բանվոր իսկույն շրջապատեցին նրան։

Բանանիտոն, առանց գլուխը բարձրացնելու, այնքան արագ էր նկարում, որ մարդիկ չէին հասցրնում հետևել նրա ձեռքերի շարժումներին։

Եվ մայթի վրա կարծես թե շունչ էր առնում նրա քիչ առաջվա երազանքը՝ գեղեցիկ մանուշակների մի ամբողջ թումբ էր ծաղկում։ Ճիշտ է, դա ընդամենը նկար էր, բայց այնքան գեղեցիկ, որ վերջ ի վերջո օդում իսկապես որ մանուշակի բուրմունք տարածվեց։

— Ինձ թվում է,— շշնջաց բանվորներից մեկը,— որ ես մանուշակի հոտ եմ առնում։

— Ավելի լավ է, դըմիկ ասես,— նկատեց նրա ընկերը,— եթե չես ուզում, որ քեզ բանտ նետեն։ Ասենք, դու ճիշտ ես, ես էլ եմ հոտ առնում։

Բանանիտոյի շուրջը լռություն տիրեց։ Միայն կավիճն էր մայթին քսվելով կամացուկ խզխզում և, յուրաքանչյուր մանուշակագույն գծի հետ, մանուշակի բուրմունքն ավելի էր ուժեղանում։ Բանվորները ցնցված էին։ Նրանք իրենց նախաճաշի փաթեթները մի ձեռքից մյուսն էին անցկացնում և ցույց էին տալիս, թե իրը ստուգում են հեծանիվների զողերը, բայց աչք չէին կտրում Բանանիտոյի շարժումներից ու հաճույքով ներս էին ծծում մանուշակի բուրմունքը։

Հնչեց գործարանի շչակը, բայց բանվորներից և ոչ մեկը տեղից չշարժվեց։ Բանանիտոն գլուխը բարձրացրեց, և նրա հայացքն հանդիպեց իր հանդիսականների աչքերին։ Այդ աչքերում նկարիչը այնպիսի մի հիացմունք տեսավ, որից նա շփոթվեց։ Արագ հավաքելով իր կավիճները՝ նա հեռացավ։

Բանվորներից մեկը հասավ նրա հետևից։

— Այդ ի՞նչ ես անում,— ասաց նա,— ինչո՞ւ ես փախչում, մի րոպե էլ որ մնար, մենք քեզ կտայինք մեզ մոտ եղած ամբողջ գումարը։ Մենք այդքան գեղեցիկ նկար երբեք չենք տեսել։

— Շնորհակալություն... շնորհակալություն...— շշնջաց Բանանիտոն և անցավ փողոցի մյուս կողմը, որպեսզի մենակ մնա։

Նա երկար թափառեց քաղաքում, բայց սիրտ չէր անում մի նոր նկար սկսել։

Հանկարծ մի շուն տեսավ նա և նորից նկարչին համակեց իսկական ոգևորությունը։ Նա տեղնուտեղը պպզեց մայթի վրա և սկսեց նկարել, և ահա նորից Բանանիտոյի շուրջը հանդիսականների մի մեծ խումբ հավաքվեց։

— Նայեցե՛ք, նայեցե՛ք, ի՞նչ ինքնատիպ մարդ է՝ կատու է նկարում։ Եթե որևէ մեկն ուզենա կատու տեսնել, դրա նեղությունը չի քաշի. մեր քաղաքում կատու ինչքան ասես կա։

— Սա սովորական կատու չէ,— ուրախ պատասխանեց Բանանիտոն։

— Լսեցի՞ք, նա սովորական կատու չի նկարում, այլ երևի՝ ակնոցավոր կատու։

Բոլոր տեսակի խոսակցությունները, կարծես թե կախարդանքով, դադարեցին, երբ Բանանիտոյի շունը թռավ ոտքի և սկսեց ուրախ հաչել։ Ամբոխի մեջ զարմանքի բացականչություններ լսվեցին և պատահարի վայրում իսկույն ոստիկաններ հայտնվեցին։

— Այս ի՞նչ բան է, ի՞նչ է տեղի ունենում. ա՜, ա՜, տեսնում եմ, տեսնում, ավելի ճիշտ, լսում եմ, հաչող կատու: Կարծես թե քիչ են մլավող շները, հիմա էլ հաչող կատու, սա ո՞ւմ կատուն է:

Ամբոխը արագ ցրվեց՝ ոչ ոք չէր ուզում այդ հարցին պատասխանել: Միայն մի խեղճ մարդ, որ կանգնած էր ոստիկանի կողքին, չհասցրեց փախչել, քանի որ վերջինս պինդ բռնել էր նրա ձեռքը:



— Կատուն սրանն է,— շշնջաց մարդը, ցույց տալով Բանանիտոյին:

Ոստիկանը թողեց նրան և բռնեց Բանանիտոյին:

— Հապա մի գնանք ինձ հետ:

Բանանիտոն թույլ չտվեց, որ իրեն երկար խնդրեն: Նա կավիճները դրեց գրպանը ու հետևեց ոստիկանին, չկորցնելով իր լավ տրամադրությունը: Իսկ շունը պոչը ցցած՝ փախավ իր գործին:

Բանանիտոյին գցեցին մի առանձին խուց, որտեղ նա պետք է սպասեր մինչև ոստիկանապետը հարկ համարեր քննել նրան: Բայց Բանանիտոյի ձեռքերն ուղղակի քոր էին գալիս աշխատանքի ցանկությունից: Նա մի թռչնակ նկարեց և բաց թողեց, բայց թռչնակը չուզեց նկարչից հեռանալ, նստեց Բանանիտոյի ուսին և սկսեց բլբուլանքով կոցահարել նրա ականջը:

— Հաճելի է,— ասաց Բանանիտոն,— դու քաղցած ես:

Եվ նա արագ կորեկի մի քանի հատիկ նկարեց: Դա նրան հիշեցրեց, որ ինքն էլ դեռ նախաճաշ չի արել:

— Ինձ երկու ձվից ձվածեղն էլ բավական է: Վատ չէր լինի, եթե վրան մի հատ էլ հասած ու խոշոր դեղձ ունենի:

Ու նկարեց այն, ինչ որ սիրտն ուզում էր և շատով ձվածեղի բուրմունքը տարածվեց մենյակով մեկ և դռնից դուրս գալով՝ գիպավ պահակի քթին:

— Ի՞նչ հաճելի է,— ասաց երկտասարդ պահակը, ագահորեն ներծծելով օդը, որպեսզի ձեռքից բաց չթողնի ձվածեղի բուրմունքը:

Բայց հետո նրա մեջ կասկած առաջացավ: Նա բաց արեց դռան դիտանցքը և նայեց ներս: Տեսնելով, որ բանտարկյալը մեծ հաճույքով ձվածեղ է ուտում, նա զարմանքից քար կտրեց և հենց այդ դիրքով էլ ու զարմանքի արտահայտությունը դեմքին, ոստիկանապետը բռնեցրեց նրան:

— Ա՜յ, սա գործ է,— բացականչեց նա զայրույթից կարմրելով:— Սա ուղղակի հիանալի է: Երևում է, մենք բանտարկյալներին ռեստորանից ուտելիք ենք բերում:

— Ես... ես չէ...— կմկմաց պահակը:

— Դու, ի՞նչ է, կանոնադրությունը չգիտե՞ս: Հաց և ջուր, ջուր և հաց, և ուրիշ ոչինչ:

— Ես չգիտեմ, թե այդ ինչպես ստացվեց,— վերջապես կարողացավ խոսել պահակը:— Գուցե նա ձվերը գրպանո՞ւմ էր եկել:

— Լավ, իսկ փառարան որտեղի՞ց: Ինչպես տեսնում եմ, իմ բացակայության ընթացքում ձեզ մոտ նորություններ են հայտնվել՝ խցերում խոհանոցներ են ավելացել:

Բայց այդ պահին ոստիկանապետը իր աչքով տեսավ, որ խցում ոչ մի օջախ էլ չկա: Իսկ Բանանիտոն, որպեսզի իզուր տեղը վնաս չտա պահակին, որոշեց խոստովանել, թե ինչպես է նախաճաշ ձեռք գցել:

— Դու ինձ հիմարի տե՞ղ ես դրել,— զայրացավ ոստիկանապետը:— Իսկ հիմա ի՞նչ կանես, եթե ես քեզ հրամայեմ, որ ինձ համար սպիտակ գինու մեջ եփած տափակաձուկ նկարես:

Բանանիտոն ոչ մի խոսք չասաց. վերցրեց թղթի մի կտոր և սկսեց նկարել պատվիրած ճաշը:

— Մաղադանո՞վ, թե՞ առանց մաղադանոսի,— նկարելով հարցրեց նա:

— Մաղադանոսով,— ծիծաղելով հրամայեց ոստիկանապետը:— Դու իրոք ինձ ապուշի տեղ ես դրել: Հենց որ վերջացնես նկարելը, ես քեզ կատի-

պեմ, որ այդ ամբողջ թուղթը կուլ տաս։

Բայց երբ Բանանիտոն աշխատանքն ավարտեց, սպիտակ գինու մեջ եփած տավարամսի հաճելի բուրմունքը տարածվեց խցով մեկ, իսկ մի քանի վայրկյան հետո, տանտիկնապետի՝ զարմանքից դուրս ցցված աչքերի առաջ, սեղանի վրա հայտնվեց թեթև գոլորշի արձակող ափսեն, որը կարծես ասում էր. «Խնդրեմ, կերեք ինձ»։

— Բարի ախորժակ,— ասաց Բանանիտոն։— Ճաշը պատրաստ է։

— Ես ինչ-որ չեմ ուզում ուտել,— փնթփնթաց տանտիկնապետը ուշքի գալով։— Տապակածուկը թող պահակն ուտի, իսկ դու արի ինձ հետ։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

Պահնորդության պետը հիմար մարդ չէր։ Ընդհակառակը, նա շատ խորամանկ էր։ «Այս մարդը,— Բանանիտոյին թագավորի պալատն ուղեկցելով մտածում էր նա,— իր քաշով մեկ ոսկի արժի, գուցե և ավելին։ Իսկ քանի որ ես բավական մեծ գանձապահարան ունեմ, էլ ինչո՞ւ պիտի նրա մեջ մի քանի կիլո ոսկի չպահեմ. այնտեղ այդ ոսկիներին ոչ ոք ձեռք չի տա և մկներից էլ պաշտպանված կլինի։ Թագավորն անպայման ինձ մեծ պարգև կտա»։

Բայց նրա հույսերը չարդարացան։ Իմանալով պատահածի մասին, Ջակոմոն թագավորը հրամայեց նկարչին իր մոտ բերել. պահնորդապետին սառը հրաժեշտ տալով, թագավորն ասաց.

— Ձեր հայտնագործության համար դուք հատուկ ծառայության մեդալ կստանաք։

— Ինչի՞ս է պետք այդ մեդալը,— քթի տակ փնթփնթում էր պահնորդապետը։— Ես արդեն 24 այդպիսի մեդալ ունեմ, և բոլորն էլ խավարարից են։ Եթե իմ սեղանների ոտները ծուռտիկ լինեին, ես այդ մեդալները կդնեի նրանց տակ, որպեսզի չշարժվեին։

Նկարիչը ամենակարող թագավորին ներկայացավ առանց հուզմունքի։ Աչքը զցած թագավորի նարնջագույն կեղծամին, որն այնպես էր շողշողում թագավորի գլխին, կարծես շուկայում ցուցադրված նարինջով լի զամբյուղ լիներ, նա հանգիստ պատասխանում էր Ջակոմոնի հարցերին։

— Այդ ի՞նչ եք այդպես նայում,— հարցրեց թագավորը։

— Ես հիանում եմ ձեր մազերով, ձերդ մեծություն։

— Իսկ դուք կարո՞ղ եք այդպիսի մազեր նկարել։

Ջակոմոնը հոգու խորքում հույս ուներ, որ Բանանիտոն ուղղակի իր ճաղատի վրա գեղեցիկ մազեր կնկարի։

— Այդքան գեղեցիկ, իհարկե, չեմ կարող,— պատասխանեց Բանանիտոն, կարծելով, թե այդ պատասխանով թագավորին հաճույք կպատճառի։

Հոգու խորքում նա խղճում էր թագավորին, որին սեփական ճաղատն այդքան հուզմունք էր պատճառում։ Ախր, շատերը բոլորովին մազերը խուզում են, որպեսզի սանրելու կարիք չունենան։ Բացի այդ, մարդկանց, միևնույն է, մազերի գույնով չեն դատում։ Ջակոմոնը թեկուզ ունենար սեփական գեղեցիկ մազեր, սև ու գանգուր, միևնույն է, նա էլի նույն սրիկան ու ծովահենը կլիներ, ինչպես որ նրան մարդիկ գիտեին։

Հառաչելով, Ջակոմոնը որոշեց իր ճաղատը մազերով զարդարելու միտքը միառժամանակ հետաձգել։ Բայց դրա փոխարեն նա որոշեց Բանանիտոյի տաղանդն օգտագործել այնպես, որպեսզի ինքը պատմության մեջ մնա, որպես մեծ թագավոր։

— Ես քեզ կենդանաբանական այգու մինիստր





կդարձնեմ,— ասաց նա նկարչին։ — Այգի ունենք, բայց արի տես, որ մեջը գազաններ չկան. դու ինքդ պետք է գազաններ նկարես։ Եվ, խնդրում եմ, որ գազանների բոլոր տեսակներից լինեն։

«Ավելի լավ է մինիստր լինել, քան բանտ նստել»,— մտածեց Բանանիտոն։ Եվ մինչև երեկո, բազմաթիվ հանդիսականների աչքի առաջ, նա հազարավոր տեսակի գազաններ և կենդանիներ նկարեց ու կենդանացրեց։

Այն ժամանակ, երբ Բանանիտոն նկարում էր, գազանները իրենց տեղերն էին գրավում վանդակներում։ Այսպես ավազանի մեջ հայտնվեցին սպիտակ արջերը, ծովառյուծները, պինգվինները, իսկ կենդանաբանական այգու ծառուղիներում երեխաներին ման ածելու համար երևացին սայլակներին լծած էշուկներ։

Այդ երեկո Բանանիտոն չկարողացավ վերադառնալ իր ձեղնահարկը՝ գիշերելու։ Թագավորը նրան պալատում առանձին սենյակ հատկացրեց և դռների վրա տասը պահակ նշանակեց, որպեսզի նկարիչը հանկարծ չփախչի։

Հաջորդ օրը կենդանաբանական այգում այլևս անելիք չկար և Բանանիտոյին նշանակեցին սննդամթերքի մինիստր։ Նրա համար սեղան պատրաստեցին և անհրաժեշտ ամեն բան տվին, որպեսզի նա պալատի մուտքի մոտ նկարեր։ Մարդիկ կարող էին դիմել նրան ուտելու համար ամեն բան ստանալու խնդրանքով։

Սկզբում ամենքը հիասթափվեցին։ Եթե Բանանիտոյից թանաք էին ուզում, որը խաբեբաների լեզվով նշանակում էր հաց, նա իսկույն մի սրվակ թանաք էր նկարում և ասում.

— Հետևյալը։

— Իսկ ինչի՞ս է պետք թանաքը,— փնթփնթում էր ծախորդը,— ո՛չ ուտել կարող եմ, ո՛չ խմել։

Բայց շուտով մարդիկ հասկացան, որ եթե ուզում են Բանանիտոյից որևէ բան ստանալ, պետք է առարկաներին տան իրենց իսկական արգելված անունները։

Պալատականների գայրույթը հասավ գագաթնակետին։

— Գործերը քանի գնում վատանում են,— կատաղությունից կանաչելով ծղծղում էին նրանք։— Սրանից լավ բան դուրս չի գա։ Այսուհետև ոչ ոք չի խաբի։ Ի՞նչ է պատահել թագավորին։

Իսկ Ջակոմոն թագավորը դեռ սպասում էր հարմար պահի, որպեսզի Բանանիտոյին ասի իսկական մազերի մասին։ Նա անհամբեր սպասում էր այն օրվան, երբ առանց քամուց վախենալու կկարողանա բաց գլխով ման գալ։ Իսկ առայժմ նա նկարչին թույլ էր տալիս, որ ինչ ուզենա անի, և այս կապակցությամբ նա ոչ մի առարկություն չէր հանդուրժի։ Պալատականներն այդ դառը հաբերն ընդունելով, դարձյալ դժգոհ էին մնում։ Գեներալները նույնպես դժգոհ էին։

— Տեսեք, թե ինչ է ստացվում,— ասում էին նրանք։— Վերջապես մեր ձեռքն է ընկել այդ նկարիչը, և մենք թողնում ենք, որ նա ի՞նչ անի. ծվածեղ, խորոված հավ, տապակած կարտոֆիլ ու շոկոլադ պատրաստի։ Պետք էր թնդանոթներ սարքել, թնդանոթնե՛ր։ Մենք կարող էինք անհաղթելի բանակ ունենալ և թագավորության տերությունը լայնացնել։

Ամենառազմաշունչ գեներալը գնաց ու այդ մասին ասաց Ջակոմոն թագավորին։

Հին ծովահենն զգաց, թե ինչպես արյունն սկսեց եռալ իր երակներում։

— Թնդանոթնե՛ր,— բացականչեց նա։— Հոյակապ է, թնդանոթնե՛ր։ Իհարկե, նաև նավեր, օդանավեր, դիրիժաբլներ։ Անմիջապես ինձ մոտ կանչեք այդ սատանայի տարած Բանանիտոյին։

Վաղուց էր, ինչ թագավորի մերձավորները նրանից չէին լսել, որ նա սատանայի անունը տա։ Իսկ դա նրա ամենասիրած հայհոյանքն էր այն ժամանակներում, երբ նա իր նավի հրամանատարական կամրջակին կանգնած ծովահեններին նավաճանկման ուղարկելուց առաջ ճառեր էր ասում։

Իսկույն և եթ դադարեցվեց մթերքի բաժանումը, և Բանանիտոն ներկայացավ թագավորի ու նրա գլխավոր շտաբի առաջ։

Բանանիտոն շատ հանգիստ, ոչ ոքի չընդհատելով, լսեց նրանց բոցավառ ճառերը: Բայց երբ նրան թուղթ ու մատիտ տվեցին, որպեսզի նա իր ձեռքով սկսի թնդանոթներ ստեղծել, նա թղթի մեջտեղում խոշոր տառերով գրեց. «Ոչ»:

—Սինյորնե՛ր,— ասաց նա,— եթե դուք ցանկանաք լավ տորթ, որպեսզի ուղեղներդ մաքրեք,—ես կարող եմ մի րոպեից էլ ավելի քիչ ժամանակում պատրաստել այն: Եթե ձեզանից յուրաքանչյուրն ուզենա ավելանք որսալու համար ձի ունենալ, ես ձեզ ամենագեղեցիկ նժույգներ կարող եմ նկարել: Բայց թնդանոթների մասին դուք պետք է մոռանաք: Ինձանից թնդանոթ դուք երբեք չեք ստանա:

Այստեղ մի իսկական իրարանցում սկսվեց: Բոլորն իրար հետ սկսեցին գոռգոռալ և բռունցք խփել սեղանին:

Գլո՜ւխը, գլո՜ւխը կտրել,— լսվեցին ձայներ:

Այդպես էլ կանեինք,— արտասանեց վերջապես Ջակոմոնը,— միայն թե գլուխը կտրելու փոխարեն մենք նրան առայժմ մտածելու ժամանակ կտանք: Ինձ թվում է, քանի որ այս նկարիչը հանճարեղ է, ուրեմն այնքան էլ նորմալ չէ: Մի քանի օրով նրան ուղարկենք խելագարանոց:

Պալատականներին վճիռը շատ մեղմ թվաց: Նրանք սկսեցին տրտնջալ, բայց գիտենալով Ջակոմոնի բնավորությունը, լեզուները շատ իրենց քաշեցին:

— Առայժմ,— շարունակեց Ջակոմոնը,— թույլ չտալ նկարել ո՛չ մատիտով, ո՛չ էլ ներկերով:

Եվ ահա Բանանիտոյին նետեցին խելագարանոցի մի առանձին խուց: Նրան թույլ չտվեցին վերցնել ո՛չ թուղթ, ո՛չ մատիտ, ո՛չ վրձին և ո՛չ էլ ներկեր: Խցում կավիճի կամ աղյուսի կտորտանք էլ չկային: Թերևս կարելի էր թաղիքով պատած պատերին արյունով նկարել: Բանանիտոն ստիպված էր հաշտվել այն մտքի հետ, որ նոր գլուխ-գործոցներ չի կարողանա ստեղծել:

Նա մեկնվեց խշտյակի վրա, ձեռքերը դրեց գլխի տակ և հայացքը գցեց նոր սպիտակեցրած առաստաղին: Նրա աչքերի առջևով գեղեցիկ տեսիլներ էին հերթով գալիս ու գնում: Դրանք այն նկարներն էին, որոնց նա կյանք կտար այստեղից դուրս գալուց հետո: Իսկ որ նա՛ այստեղից դուրս կպրծներ, բոլորովին չէր կասկածում:

Եվ նա իրավացի էր, որովհետև մեկը կար, որ արդեն աշխատում էր Բանանիտոյին փրկել: Այդ փրկարարի անունը երևի արդեն ձեր լեզվի վրա է: Դե, իհարկե, դուք չեք սխալվում, դա Կապիկ-կատուն է:

(Շարունակելի)

# Ուրախության մատանին

ՕՆԻԿ ՓԱՆԻԿՅԱՆ

Հույն բանվոր Եանին առավոտ շուտ գործի գնալիս անցնում էր զբոսայգու միջով: Նա քայլում էր գլխահակ ու մտախոհ: Բայց հանկարծ մի նստարանի տակից ինչ-որ ոսկեգույն բան փայլեց: Մոտեցավ ու վերցրեց: Մի մատանի էր, շողշողուն, ոսկի մի մատանի...

Ուրախացավ Եանին, շա՜տ ուրախացավ: Նրա երեք երեխաներն էլ կոշիկ չունեին: Հիմա այդ մատանին կվաճառեր և դրամով կկարողանար երեք զույգ փոքրիկ կոշիկ գնել: «Այս մեկ հոգսից պրծա՜»— մտածեց նա: Բայց քիչ հետո խորհեց. «Ո՞վ իմանա, հիմա որքան տխրած կլինի այս մատանին կորցնողը: Եթե ճանաչեի նրան, ազնիվ խոսք, իսկույն կտանեի կտայի, որ սիրտս հանգիստ լինի: Բայց ցավն այն է, որ չգիտեմ, թե ու՛մ է պատկանում, ո՛վ է տերը»:

Այնուամենայնիվ, այդ օրը Եանին աշխատեց ուրախ ու աշխույժ: Կատակներ էր անում ընկերների հետ: Եվ, իհարկե, շուտ-շուտ ձեռքը գրպանն էր տանում ստուգելու, թե մատանին տեղո՞ւմն է:

Երեկոյան վերադարձավ տուն ու գտածը ցույց տվեց կնոջը:

— Ի՜նչ լավ է եղել,— հրճվեց կինը: — Իսկական ժամանակին հասավ: Կծախենք ու երեխաների համար կոշիկ կգնենք, չէ՞, Եանի:

— Ես էլ այդպես եմ մտածել,— վրա բերեց ամուսինը:

Մարդ ու կին այնքան ուրախացան, որ հյուրի համար պահած մի շիշ գինին բացեցին ու խմեցին: Իսկ երեխաները քաղցրեղեն ստացան:

Մի քանի օր բանվոր Եանիի ընտանիքը երջանիկ էր:

Վերջապես Եանին մատանին տարավ շուկա, որ ծախի:

— Բարև՛, վարպետ,— ասաց Եանին խանութ մտնելով:

— Աստծու բարին,— պատասխանեց ոսկերիչը: — Ի՞նչ եք ցանկանում:

— Ուզում եմ այս մատանին ծախել: Աղքատ մարդ եմ, փողի կարիք ունեմ:

Ոսկերիչը մատանին վերցրեց, ծանր ու թեթև արեց, զննեց ու վերադարձրեց:

— Ոսկի չէ: Արծաթ մատանի է՝ ոսկեջրած: Ինձ պետք չի գա:

— Ի՞նչ արժի, վարպետ:

— Լեփտաներ[1]... թերևս մի քանի դրախմի[2]:

Ժանին վերցրեց մատանին ու քմծիծաղով վերադարձավ տուն:

Կինը զարմացավ, թե ինչու է ամուսինը դատարկ ձեռքով գալիս:

— Ո՞ւր են կոշիկները, — հարցրեց նա անհամբեր:

— Մատանին արծաթ դուրս եկավ, — պատասխանեց Ժանին ժպտալով: Բախտ չունենք, կնի՛կ:

— Ոչի՛նչ... Գոնե մի քանի օր ուրախ ու զվարթ անցկացրինք, չէ՞, Ժանի:

— Ճիշտ որ...

— Իսկ հիմա ի՞նչ պիտի անես մատանին, — հարցրեց կինը:



— Ի՞նչ պիտի անեմ... պիտի գցեմ դարակն ու ... մոռանամ:

— Գիտե՞ս ես ինչ եմ մտածում, Ժանի:

— Ի՞նչ:

— Մտածում եմ, որ մեր թաղամասի մարդիկ մեզ նման տխուր ու չքավոր բանվորներ են...

— Հետո՞...

— Արի մատանին նորից գցենք զբոսայգում, մի նստարանի տակ, որ գտնողը մեզ նման մի քիչ ուրախանա:

— Ճիշտ ես ասում, կնիկ ջան, — համաձայնեց ամուսինը, — ճիշտ ես ասում, բարի սիրտ ունես:

Եվ հաջորդ օրը Ժանին այդպես էլ արեց:

Այս անգամ մատանին գտավ մի ուրիշ թշվառ բանվոր՝ Կոչոն: Նա չէր հավատում իր աչքերին: Մի՞թե իրավ է: Հիմա իրե՞նն է այդ թանկագին, ոսկի մատանին:

Բանվոր Կոչոն տուն վերադարձավ գոհ ու բախտավոր: Կինն անմիջապես զգաց ամուսնու լավ տրամադրությունն ու հարցրեց.

— Ի՞նչ է պատահել քեզ, Կոչո: Աչքիս շատ ուրախ ես երևում:

— Ինչո՞ւ ուրախ չլինեմ, Կատերինա, տե՛ս, — ու ցույց տվեց մատանին, — գտա...

Կինը նույնպես հրճվեց ու փաթաթվեց ամուսնու վզին:

Այդ միջոցին փողոցից տուն վերադարձավ նրանց որդին:

— Ալեկո, — ասաց հայրը տղայի գլուխը շոյելով և գրպանից մանր փող հանեց, տվեց նրան: — Գնի՛ր, ինչ որ սիրտդ ուզի:

— Շնորհակալություն, հայրիկ, — բացականչեց տղան:

— Լսի՛ր, Ալեկո, քո ուսման փողն արդեն պատրաստ է: Շուտով կգնաս դպրոց: Պատրաստվի՛ր:

— Ճի՞շտ, ճի՞շտ, հայրիկ, — սկսեց վեր-վեր թռչել Ալեկոն և ուժգին փարվեց հայրիկին:

Մի քանի օր անց, Կոչոն մատանին տարավ ոսկերչի մոտ:

— Վարպետ, ցանկանում եմ ծախել... նեղն եմ:

Ոսկերիչը մատանին վերցրեց, նայեց ու վերադարձրեց:

— Ոսկի չէ: Իսկ արծաթի կարիք չունեմ: Տար ուրիշի:

Կոչոն գնաց մի քանի տեղ ևս, բայց ոչ որ կարգին փող չտվեց:

Վերադարձավ տուն ու մի տեսակ վշտագին ծիծաղով մտավ սենյակ:

— Ափսո՜ս, Կատերինա, — ասաց Կոչոն կնոջը, — ափսո՜ս, մատանին ոսկեջրած արծաթ է եղել: Չկարողացա վաճառել:

— Հիմա ի՞նչ պիտի անենք, — հարցրեց կինը զարմացած:

— Առողջություն լինի, ա՛յ կնիկ: Ուրիշ ի՞նչ կարող ենք անել:

— Բա հիմա մատանին ի՞նչ ես արել:

— Ի՞նչ պիտի անեի, ես արդեն գցել եմ զբոսայգում, որ ուրիշը գտնի և մեզ նման ուրախանա:

Սակայն մի առավոտ այնտեղից անցավ մեծափոր, վաճառական մի մարդ՝ շքեղ զգեստով ու ձեռքին գավազան: Այս անգամ նա գտավ մատանին ու դրեց գրպանը: Հարուստ մարդն անմիջապես հասկացավ, որ մատանին ոսկեջրած արծաթ է: «Բայց ոչինչ» մտածեց նա, երբ գյուղ գնամ առևտրի, իբրև ոսկի, կսաղացնեմ մի միամիտ գյուղացու վրա...

Այսպես, այլևս ուրախության մատանին չերևաց զբոսայգում:

---

[1] *Լեփտա — հունական փող, կոպեկ:*

[2] *Դրախմի — հունական փող: Հարյուր լեփտան մի դրախմի է:*

Բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկյանը արտասահմանյան ուղևորության ժամանակ եղավ նաև Կահիրեում, ուր «Պիոները» բազմաթիվ ընթերցողներ ունի:

Գալստյան Ազգային վարժարանի մի խումբ աշակերտներ, որոնք սիրով զբաղվում են նկարչությամբ, բանաստեղծուհու միջոցով ուղարկեցին մեզ իրենց լավագույն նկարները:

Տպագրում ենք դրանցից մի քանիսը:



Եգիպտուհի
ՇԱՆԹ ԱՎԵՏԻՍՅԱՆ, 12 տարեկան



Պորտ-Սաիդի պատերազմը
ՍՈՆԱ ՋՈՐԱՅԱՆ, 11 տարեկան







Գոհար Գասպարյանը Կարմենի օպերայում

ԺԻՐԱՅՐ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ. 11 տարեկան

Վարդանանց ժողովը

ՆՎԱՐԴ ԹՐԱՅԱՆ. 12 տարեկան



## Աշունը



ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ես ավլեցի
Բակ ու փողոց
Շատ մաքուր.
Բայց ո՞վ նորից
Տերև թափեց
Մեր բակում:
Այդ դու՞ արիր,
Ջալիկ հավիկ.
Թե՞ շունը.
— Ո՛չ. մենք չարինք.
Աշունն արեց,
Աշո՜ւնը:







## Ես ծաղիկ եմ



Ռ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ես ծաղիկ եմ, սարի ծաղիկ.
Բույր եմ տալիս բոլոր մարդկանց.
Ինձ գգվում է, շոյում մեղմիկ
Գարնան հովը քնքուշ ու թաց:

Ինձ ժպտում է արևը վառ
Երկնքի ջինջ, կապույտ կրծքից.
Իմ թերթերում արևափայլ
Չկա աշուն, չկա թախիծ:

Իմ թերթերում՝ փոքրիկ ու հեզ,
Կա խնդություն, երազ ու սեր,
Կա քնքշություն կարոտակեզ,
Այգաբացի կարմիր շողեր:







# ՎԱԽԿՈՏԻՆ ԴԻՄԱԿԸ ՉԻ ՕԳՆԻ

ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Երեկ Արտակի ծննդյան օրն էր: Նա շատ գեղեցիկ նվերներ ստացավ, սակայն ամենից շատ նրան ուրախացրեց քեռի Արամի բերած նվերը:

Երբ Արտակը ուրախ ճիչով գնաց մոտ դիմավորեց նրան, քեռին Արտակին մեկնեց թերթով փաթաթված մեծ ու թեթև մի բան: Արտակը անհամբերությունից փոքրիկ մատները թղթի մեջ խրեց: Թերթի ծվենների արանքից նա տեսավ զարմանալի մի բաց երախ, որից դուրս էին ցցվել ահավոր ժանիքները: Արտակը սարսափահար ճչաց ու հետ փախավ:

— Արտակ ջան, մի՛ վախենա, մի՛ վախենա, դա իսկական չէ, դիմակ է, դիմակ,— այս ու այն կողմից հանգստացրին նրան:

— Դիմակ, դիմակ,— լացակումած պատասխանեց Արտակը, սեղմվելով մոր ծնկներին:

Ես մոտեցա Արտակին ու սկսեցի համոզել նրան.

— Վերցրու, Արտակ, վերցրու դիմակը ու ծածկիր դեմքդ, տես, թե ինչպես բոլորը կվախենան քեզանից:

Այդ միտքը համակեց նրան. իհարկե, նա կուզենար վախեցնել բոլորին:

Ես մոտեցա փոքրիկ սեղանին, պատռեցի թերթը և դիմակը մոտեցրի դեմքիս: Արտակը վախեցած հպվեց մոր հագուստի փեշերին, որ չտեսնի ինձ: Մեկ մոտեցավ Նունեն, որ երկու տարով մեծ էր եղբորից,



ուրախ-ուրախ վերցրեց դիմակը ու սկսեց վախեցնել շրջապատողներին: Երեխաները ճչում էին, փախչում, ծիծաղում:

Արտակն էլ ուրախացած ծիծաղում էր:

Հանկարծ նա թռավ տեղից ու փորձեց խլել դիմակը:

— Տո՛ւր, Նունե ջան, տո՛ւր, ես պիտի վախեցնեմ:

— Ո՞ւմ:

— Արայիկենց կատվին:

— Վերցրո՛ւ, վերցրո՛ւ, նա մեկ շատ է վախեցրել:



— Արայիկ, ձեր կատուն տա՞նն է,— հարցրեց Արտակը:

— Տանն է,— պատասխանեց Արայիկը,— նա խոսել չգիտի, որ հարցնի, իսկ առանց հարցնելու տեղ չի գնում:

— Ուրեմն տանն է,— կրկնեց Արտակը և դիմակը հարմարեցրեց դեմքին,— ես հիմա նրան ցույց կտամ:

Բոլոր երեխաները հավաքվեցին Արայիկենց դռան առաջ: Արայիկը սեղմեց դռան զանգի կոճակը:

— Մյա՜ու,— լսվեց ներսից:

Արտակը գիտեր կատվի այդ սովորությունը: Ամեն անգամ, երբ ծեծում էին նրանց դուռը, դուռը բաց անող մարդկանց հետ կատուն շտապում էր դռան մոտ ու մլավում:

— Մյա՜ու,— Արտակին տեսնելով աչքերը լայն բաց արեց կատուն:

Արտակը մոռացավ դիմակը և այն, որ ինքը պետք է գռռեր կատվի վրա ու վախեցած ետ-ետ գնաց:

— Վախեցրո՛ւ, վախեցրո՛ւ,— հիշեցրեց Նունեն:

Արտակը առաջ նետվեց:

— Ու, ու-ո՛ւ...

Կատուն հետևեց նրան: Արտակը չէր կարծում, որ կատուն անվախ է: Կատվի հերոսությունից հուսահատված՝ նա լաց եղավ:

Արայիկը, որն ութ տարեկան էր արդեն, տարեց մարդու իմաստությամբ եզրակացրեց.

— Կարծում ես դիմակը օգնո՞ւմ է վախկոտ մարդուն:

Արայիկի մայրիկը, որ ուշադրությամբ հետևում էր այս բոլորին, մոտեցավ նրանց և, գրկելով Արտակին, հանգստացրեց.

— Լաց մի՛ լինիր, երբ երկու անգամ էլ տոնենք քո ծննդյան օրը, դու արդեն հինգ տարեկան կլինես ու էլ չես վախենա կատվից:

— Առանց սրա՞,— դիմակը օդում ճոճելով հարցրեց Արտակը:

— Այո՛, առանց դրա,— պատասխանեց Արայիկի մայրիկը:




Մի փոքրիկ տղա
Գիշերը գրում
Բնության խաղաղ
Հեքիաթն է լսում:

Նայում է քնած
Դաշտին ու սարին.
Աստղերներ դարձած
Ծաղկին ու ծառին:

Հիանում է նա
Լուսնի մանգաղով.
Ուռենու կանաչ
Տերևի խաղով:

Հոգնած ջրերի
Խորունկ խռռոցով,
Հեռու աստղերի
Սպիտակ բոցով:

Հրաշք բնության
Հեքիաթն է լսում,
Եվ ափսոսանքով
Ինքն իրեն ասում.

— Ա՜յ, թե արևն էլ
Ետ վերադառնար,
Գիշերն ավելի
Թովիչ կդառնար:



# ԵՐԳԸ

ԽՈՐՍԻԿ ԲԱՐՆԱԿՅԱՆ

Մենք երկու գունավոր ճնճղուկ ունեինք։ Նրանք ապրում էին վանդակում: Մի քանի ամիս էր արդեն, որ նրանք մեր տանն էին։ Ես ու մեծ քույրիկս սիրով կուտ ու ջուր էինք տալիս նրանց, փոխում էինք վանդակի հատակին փռած թուղթը: Անում էինք ամեն բան, որ ճնճղուկները գոհ մնային։

Բայց ամեն օր, երբեմն էլ օրական մի քանի անգամ, ճնճղուկները, ասես, վանդակի երկաթյա լարերին սրում էին կտուցներն ու հարձակվում միմյանց վրա: Այո՛, հարձակվում... և այնքան էին կտցահարում իրար, մինչև ուժասպառ էին լինում։

Վանդակը կախված էր պատից և, երբեմն օդի մեջ պտույտներ գործելով, ցած էին իջնում նրանց գունավոր փետուրները։

Ես երկար նայում էի և ուզում էի հասկանալ, թե ինչու են նրանք կռվում:

— Երևի կատակ են անում, — ասում էր մայրս:

Նրանց չարությամբ վառվող աչքերից կրակի ճայծեր էին թափվում։ Ո՛չ: Նրանք կռվում էին: Ո՞վ գիտի, գուցե հիշում էին մայր անտառը, որտեղից բռնել բերել և վանդակել էին նրանց: Չգիտեմ։ Միայն տեսնում էինք, որ նրանք կռվում էին և կռվում էին շատ հաճախ: Մի անգամ նույնիսկ վանդակի հատակին փռած սպիտակ թղթի վրա արյան կաթիլ ընկավ...

Նրանք հանգստանում էին միայն գիշերները: Սիրում էին, որ հանգցնեինք լույսը: Մթության մեջ երևի մտովի ընկնում էին հարազատ անտառը և քնում: Բայց միշտ քնում էին իրարից հեռու, վանդակի տարբեր ծայրերում:

Այնպես պատահեց, որ մենք դեղձանիկ էլ ունեցանք: Իհարկե, դեղձանիկն ապրում էր մենակ, առանձին վանդակի մեջ։ Բայց նրա բնակարանը գրեթե կից էր ճնճղուկների բնակարանին. կարելի է ասել, որ նրանք հարևաններ էին:

Երեք օր դեղձանիկի ձայնը չլսվեց: Երեք օր նա իր փոքրիկ աչքերով դիտում էր շուրջը, իսկ ամենից շատ՝ կռվարար ճնճղուկներին։

Այդ օրերին նա լսում էր բոլոր ձայները: Ես տեսնում էի, թե նա ինչպես է թռչկոտում վանդակի մեջ, երբ խոհանոցում բաց էի թողնում ջրի ծորակը: Երբ միացնում էի փոշեծծիչը, դեղձանիկը ձգվում էր, գլուխը հանում վանդակից դուրս և, փոքրիկ թևերը թափահարելով, ունկնդրում էր այդ ձայնին:



Նկ. ՖԵԼԻՔՍ ԴՅՈՒԼԱՆՅԱՆԻ

Չորրորդ օրը կատարվեց մի շատ անսպա-

սելի բան: Այն պահին, երբ ճնճղուկներն իրենց սովորական հարձակմանն անցան, դեղձանիկը բացեց իր փոքրիկ, դեղնագույն կտուցը: Ես առաջին անգամ էի լսում դեղձանիկի երգը... Նա կլկլացնում էր, ու թվում էր, թե սառցի տակից գարնանային ջուրն է հոսում դուրս... Ապա իջեցնում էր ձայնը, գեղգեղում, ու թվում էր, թե դեմքդ շոյում է զեփյուռը... Կամաց-կամաց ձայնը բարձրացնում էր, բարձրացնում և շվվացնում այնպես ուժեղ, որ ասես կանգնած էիր ջրվեժի մոտ... Իսկ հետո լսվում էին մեղմ ելևէջներ: Թվում էր, թե լուսաբաց է ու երգում են քնից արթնացող թռչունները...

Ինձ հետ քարացել էին նաև ճնճղուկները: Նրանք փոքրիկ ճանկերով կպել էին վանդակի պատերին, ամեն, ամեն ինչ մոռացած: Նրանց կռվարար աչքերում, քնքշանքով լի արցունքներ էին սառել: Եվ այնքան էին լարվել, որ երգից հետո նրանք ընկան վանդակի հատակին այնպես խեղճացած, ինչպես կռվից հետո:

Այդ օրվանից սկսած, երբ ճնճղուկները պատրաստվում էին կռվելու, հենց այդ պահին դեղձանիկը բացում էր փոքրիկ կտուցը:

Եվ ճնճղուկները թևատարած նստում էին վանդակի պատերին ու լսում նրա երգը: Երբեմն նրանք էլ էին ուզում ձայնակցել: Իրենց սուր ծղրտոցով ուզում էին դեղձանիկի հետ կցալ, հավատալ և վերանալ...

Ճնճղուկներն էլ չէին կռվում: Շատ վարմանալի էր, բայց այդպես էր, դեռ ավելին, ճնճղուկները մոռացան վանդակում իրենց ընտրած մշտական անկյունները: Այժմ արդեն կողք-կողքի էին նստում, իսկ գիշերները քնում էին գլուխ-գլխի տված:

Իհարկե, դեղձանիկը այդ չէր տեսնում, որովհետև նա քնում էր գլուխը թևի տակ դրած, մարմինը դարնում էր դեղնակարմիր մի գնդիկ:

Ես կռահում էի, թե ինչու է դեղձանիկը գլուխը ծածկում, ես համոզված էի, որ նա ջատ երազող է և ծածկում է գլուխը, որ մտքի թևերով ընկնի հարազատ անտառը, բնությունից խլի ամենալավը, դարձնի երգ ու մյուս օրը իր քաղցր ձայնով լցնի մեր ողջ տունը, երգով հարբեցնի կռվարար ճնճղուկներին:




ԳԵՂԵՑԻԿ ՄՈՎՍԻՍՅԱՆ

*Հանկարծ Աշոտիկի ձեռքում ինչ-որ բան ճթաց: Երեխաները շրջապատեցին Աշոտիկին:*

*— Վա՜յ,— բացականչեցին բոլորը,— ընկե՛ր Համբիկ, ընկե՛ր Համբիկ, Աշոտիկն աքաղաղը կոտրեց:*

*Աշոտիկի մի ձեռքում աքաղաղի մարմինն էր, մյուսում՝ գլուխը: Աշոտիկը սկսեց լաց լինել:*

*— Լաց մի՛ լինի,— կարեկցանքով մոտ եկավ Արմենը,— արի միասին աքաղաղի գլուխը կպցնենք, ես քեզ կօգնեմ:*

*Աշոտիկն իսկույն ձայնը կտրեց և կոտրված աքաղաղը մեկնեց Արմենին: Արմենը մեծի նման միացրեց հոնքերը և սկսեց մտածել. ինչպե՞ս ամրացնել գլուխը...*

*— Այ, եթե հացի խմոր լիներ,— ասաց Աշոտիկը:*

*— Դու չես հասկանում, խմորով չի կպչի,— ասաց Արմենը:*

*Վերջապես Արմենը հաղթական ժպտաց և աքաղաղի դատարկ գլուխն անցկացրեց սուր պոչի վրա:*

*Բոլոր երեխաները ծիծաղեցին:*

*— Վա՜յ, աքաղաղի գլուխը պոչի վրա է:*

*— Իզուր եք ծիծաղում, դուք չեք հասկանում,— ասաց Արմենը:— Ավելի լա՛վ է, գլուխը պոչի վրա լինի, քան թե բոլորովին գլուխ չունենա:*

*Երեխաները համաձայնեցին. դե, իհարկե, առանց գլխի աքաղաղ չի լինի, իսկ այդպես գոնե գլուխ ունի աքաղաղը:*

*— Ի՞նչ անենք, որ պոչի վրա է գլուխը,— Արմենին պաշտպանեց Անուշիկը,— իսկ մեր հարևանը, որ նկարիչ է, նկարել էր աքաղաղ, վրան՝ մարդու գլուխ:*

*Փոքրիկները հպարտությամբ նայեցին իրենց Արմենին և, զգուշությամբ, պոչին գլուխ ունեցող աքաղաղը տեղավորեցին խաղալիքների պահարանում:*



# ՏՂԱՅԻ ՈՏՆԱՀԵՏՔԵՐԸ

ՎԱԶԳԵՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Լսվում է մոտեցող արկի սուր վզվոցը: Պայթյուն: Հողը շառրվանում է և մաղվում թիթեղյա տանիքներին: Մարդիկ ահաբեկված թափվում են փողոցները և սպասում: Ահա մոտակա ոլորանից. ուսուսի տված դուրս են գալիս երկու բանակային: Նրանք վիրավոր են և հազիվ են քայլում: Քիչ հետո երևում են էլի մի քանի զինվորներ. ապա՝ ձիասայլեր. թնդանոթներ: Մերոնք նահանջում են: Հրաձգությունը հետզհետե մոտենում է գյուղին:

Գրիշան անշարժացած կանգնել էր իրենց տան առաջ և դիտում էր դեպի Արևելք ձգվող մարդկային հոսանքը:

— Քեռի, այդ ո՞ւր եք գնում.— զինվորի փեշից ձգելով հարցնում է տղան:

Զինվորը միանգամից չի կարողանում պատասխանել: Իսկապես, ո՞ւր էր գնում:

— Դա մեր խելքի բանը չէ: Ավելի լավ է. մի բաժակ ջուր բերես:

Մինչ զինվորը կդատարկեր բաժակը. նրա այտերով արդեն արցունքներ էին գլորվում: Գրիշան արտասվող տղամար դառաջին անգամ էր տեսնում:

— Զարմանո՞ւմ ես,— տղային է դիմում զինվորը.— ոչինչ. արտասվելը մեղք չէ. միայն թե սիրտը դիմանա, ոտքերի հետ նա էլ չնահանջի:

— Ուրեմն նահանջո՞ւմ եք.— սարսափած հարցնում է Գրիշան:

— Այդպես է ստացվում:

Զինվորը էլի ինչ-որ բան էր ուզում ասել. բայց ձեռքը թափ տվեց ու շարունակեց ճանապարհը:

Ամնի՞ց դժգոհեց. ո՞ւմ նախատեց. տղան չհասկացավ: Ահա մոտենում է սանիտարական մի մեքենա և կանգ առնում Գրիշայենց տան առաջ: Տղան տարակուսանքով նայում է ավտովարորդին: Հետո բացվում է մեքենայի դռնակը և Գրիշան նկատում է իր հաղթանդամ հորը: Նրա աչքերը կապված են: Տղան վազում. նետվում է հոր գիրկը:

— Հայրի՜կ...

Վասիլին կրծքին է սեղմում որդուն. շոյում մազերը:

— Տեսա՞ր. որ շուտ վերադարձա, իսկ դու չէիր հավատում,— դառը ժպտալով շշնջում է Վասիլին:

— Հայրիկ. ճի՞շտ է, որ մերոնք նահանջում են,— հեկեկալով ասում է Գրիշան:

Հայրը չլսելուն է տալիս:

— Դե, Վասիլի. մնաս բարով,— ասում է վարորդն ու շարժվում առաջ:

— Գնաս բարով. Ֆեդյա: Վերադարձին ինձ չմոռանաս. սպասելու եմ:

— Անպայման:

— Հայրիկ. իսկ ե՞րբ են վերադառնալու:

— Դժվար է ասել. զավակս: Ամեն ինչ այնպես չստացվեց. ինչպես ես ու դու էինք մտածում: Հիշո՞ւմ ես, մեր հաշիվներում նահանջ չկար. իսկ հիմա կա: Բայց մենք կվերադառնանք: Դժվարը կանգնելն է: Հենց որ ոտքներիս տեղ արինք. էլ մեր հարվածին դիմանալ չի լինի:

Հայր ու որդի տուն են մտնում: Գրիշան հորը տանում. նստեցնում է պատուհանի մոտ, թախտին: Վասիլին շոշափում է աչքերի վիրակապը:

— Ցավո՞ւմ է.— հարցնում է Գրիշան:

— Ցավում էին. վիրահատեցին:

— Ի՞նչը:

— Աչքերս:

— Ուրեմն էլ չե՞ս տեսնելու:

— Ո՛չ. զավակս: Հիմա դու պարտավոր ես իմ փոխարեն էլ տեսնել:

Որդին չի կարողանում միանգամից ընկալել այդ ահավոր եղելությունը:

— Մոտեցիր ինձ,— ասում է հայրը:

Գրիշան մոտենում է: Վասիլին բռնում է որդու երկու ձեռքերից և ուղիղ «նայում» աչքերին:

— Ինձ թվաց. թե դու արտասվում ես:

— Ո՛չ. չեմ արտասվում:

Տղան ցանկանում է գլուխը թեքել. որ արցունքի



կաթիլները չգլորվեն հոր ձեռքերին: Հայրը մեղմ ժպտում է:

Իսկ խաբել չի կարելի:

Գրիշան հեկեկում է:

— Հանգստացի՛ր, զավակս: Աչքերն ի՞նչ են որ, թող նա՛ մտածի, ով գլուխն է կորցրել:

— Իսկ մենք ի՞նչ ենք անելու:

Մի բան կանենք:

Փողոցում մոտոցիկլետի հռնդյուն է լսվում: Գրիշան շտապ դուրս է վազում և ծանր քայլերով վերադառնում:

Նրա՞նք են, հարցնում է հայրը:

Այո՛,— կիսաբաց դռնից հաստատում է Գրիշան:

Վասիլին հանում է մախորկայի քսակը, մեկնում տղային:

Ծխախո՛տ ոլորիր:— Տղան փորձում է, բայց չի կարողանում:

Հը, ի՛նչ է, չի՞ ստացվում:

Գրիշան թեև դժվարությամբ, բայց գլուխ է բերում: Վասիլին նախքան վառելը շոշափում է ձագարաձև գլանակը:

— Ոչինչ, վատ չես ոլորել: Սովորիր ոլորել, վաղը պետք է գալու:

Քիչ հետո խրճիթը լցվում է մախորկայի բուրմունքով: Վասիլին գրպանից հակատանկային մի նռնակ է հանում և դնում սեղանին:

Գրիշա, սա դիր աստվածամոր հետևը: Չմոռանաս մոմ էլ վառել: Հիմա մեր աստվածը սա է:

Տղան կատարում է հոր խնդրանքը, թեև չի հասկանում դրա իմաստը: Հազիվ էր հասցրել մոմը վառել, երբ առանց դուռը բախելու ներս խուժեցին երկու ֆաշիստական զինվոր, և առանց նկատելու, թե ով կա տանը, մեքենայորեն բղավեցին.

Հենդե հո՛խ:

Գրիշան անթարթ նայում է գազազած զինվորներին, իսկ Վասիլին անտարբեր, գլուխը կախ շարունակում է ծխել: Երկարահասակ զինվորը մոտենում է տղային և բարձրացնում նրա երկու ձեռքերը:

— Երբ գերմանական զինվոր ներս մտնել, դուք ձեռք բարձրացնել անպայման, չգիտե՞ս:

Գրիշան գլխով բացասական նշան է անում:

Շատ վատ: Եվրոպան գիտի, իսկ ռուս լակոտ՝ ոչ:

Երկարահասակը ավելի է կատաղում՝ նկատելով Վասիլիի բերանից օղակ-օղակ վեր բարձրացող ծուխը:

— Իսկ դուք ո՞վ եք:

— Մի՞թե դուք էլ եք կույր.— հանդարտ պատասխանում է Վասիլին:

— Ինչ ասե՞լ:

— Ասում եմ՝ ոչինչ չեմ տեսնում,— ձայնը քիչ բարձրացնելով պատասխանում է Վասիլին:

— Աչքեր քիչ են, լեզու հարկավոր կարել:

Վասիլին մի պահ ցանկանում էր ցատկել, բռնել զինվորի կոկորդից ու գրողի ծոցը ուղարկել նրան, բայց վախենում էր վրիպել:

— Լեզվից վախեցողը գլխից թույլ է լինում,— կարծես հենց այնպես, ինքն իրեն շշնջում է նա:

Լռե՛լ: Ինչպե՞ս համարձակվում այդպես խոսել ֆելդֆեբելի հետ:

— Ներեցեք, ես չեմ տեսնում:

Դուք պետք է զգաք:

Դեռ վաղ է:

— Չխոսել,— ավելի ուժգին է բղավում ֆելդֆեբելը:

— Ա՛յ, հիմա արդեն զգացի, որ գերմանական զինվոր եք:

Հարևան սենյակից դուրս է գալիս կարճահասակը, պիոներական վզկապը ձեռքին:

— Սրանից բացի ուրիշ ոչինչ վտանգավոր չգտա:

Ֆելդֆեբելը վերցնում, շոշափում է, ապա կատաղած աչքերը հառում Գրիշային, որ գնացել կանգնել էր հոր կողքին:

— Քո՞նն է:

— Այո՛,— պատասխանում է տղան:

Մո՛տ արի:

Գրիշան ամուր հպվում է հորը:

Մո՛տ արի, ասում եմ:

Գրիշան մոտենում է:

— Առ կապի՛ր:

Տղան հայացքը չկտրելով ֆելդֆեբելից, վերցնում է վզկապը:

— Վատ պիոներ, կապել չգիտել:

Զինվորն արձակում է վզկապը, տղան ենթադրելով, թե ֆելդֆեբելը ցանկանում է ավելի լավ կապել, ձգվում է, վիզը երկարում: Այդ պահին նա այնպես է ձգում վզկապի ծայրերը, որ Գրիշան քիչ է մնում շնչահեղձ լինի: Տղան հասցնում է սուր ճիչ արձակել: Վասիլին ցատկում է տեղից:

Ի՞նչ պատահեց, Գրիշա:

Տղան չի կարողանում պատասխանել: Նրա աչքերը դուրս էին ցցվել, դեմքը կարմրել: Փորձում է թուլացնել օղակը, բայց չի կարողանում: Մի քիչ էլ եթե մնար, երևի շնչահեղձ լիներ: Գերմանացին նկատում է այդ և թուլացնում կապը: Տղան օրորվում է: Եթե գերմանացին չբռներ, կարող էր տապալվել հատակին:

— Հիմա հասկացա՞ր, որ սրանով կարելի է նաև կախել,— ասում է զինվորը և վզկապը պտտեն-պտտեն անելով շպրտում տղայի դեմքին:

Այդ ակնթարթից Գրիշան զինվոր դարձավ, մեծ կորուստ կրած զինվոր: Նրան թվաց, թե պիոներական վզկապը գլխատված աղավնու նման թպրտում է, փորձեց վերցնել, բայց գերմանացու կրունկը իջավ նրա ձեռքին:

Քիչ հետո ֆելդֆեբելը մոտենում է վառվող մոմին, քմծիծաղ տալիս:

— Դու հավատու՞մ:

— Ո՛չ, իմ տատիկը,— հեգնանքով պատասխանում է Գրիշան:

Իսկ ո՞ւր է նա:

Անցյալ տարի մահացել է:

— Դու ինձ ձեռ առնո՞ւմ, լակոտ,— փրփրում է գերմանացին ու փչելով հանգցնում մոմը:

Գերմանական աստված լույս չի սիրում:



— Մեզ դա վաղուց է հայտնի,— անվրդով հաստատում է Վասիլին:

— Ինչ ասե՞լ:

Վասիլին լռում է:

— Դուք շատ ժլատ: Այսքան մեծ երկիր, բայց աստված փոքրիկ անկյուն պահել: Մենք ազատել նաև ձեր աստված:

— Եթե նա կամենար:

— Այսուհետև աշխարհը ֆյուրերի ցանկությամբ պիտի պտտվի: Հասկացա՞ք:

Վասիլին ցանկանում է պատասխանել, բայց ֆելդֆեբելը ընդհատում է նրան.

— Լռե՛լ: Ռուսաստանը շատ է օգտվել կույր լինելու իր իրավունքից: Մենք կբացենք նրա աչքերը:— Վասիլին վերստին փորձում է ինչ-որ կծու խոսք ասել, բայց...

— Լռե՛լ, ասում եմ: Հիմա մենք խոսել:— Ֆելդֆեբելը ընկերոջ ականջին ինչ-որ բան է փսփսում, սա գլխով է անում:

— Հա՜յլ Հիտլեր,— գոռում են երկուսով ու դուրս գալիս:

— Հը՛, սարսափելի՞ էր,— ժպտալով տղային է դիմում Վասիլին:

— Իսկական գազաններ են:

— Սրանք դեռ նապաստակներն են, գայլերը հետո են գալու:

Դրսից քրքիջի, ծիծաղի ձայներ են գալիս: Գրիշան քաշում է լուսամուտի վարագույրը, նայում:

— Ի՞նչ են անում,— հարցնում է հայրը:

— Ձեռ են առնում անցնող կանանց ու աղջիկներին:

Վասիլին տեղից վեր է կենում:

— Բե՛ր նռնակը:

Տղան զարմանքով նայում է հորը: Նա ոչինչ չի հասկանում:

— Գրիշա, ասում եմ՝ բե՛ր նռնակը:

Տղան բերում է:

— Տանենք հանձնենք, թե չէ կարող է վնաս տալ:

Հայր ու որդի դուրս են գնում: Ահա նրանք մոտենում են խմբված գերմանացիներին: Սրանք շարունակում են հռհռալ, բարձր գոռալ:

— Ռուս, ինչու՞ գլուխդ կախել: Ոչինչ, մենք նոր գլուխ տալ:

Սպաներից մեկը նկատում է Վասիլիին և ինչ-որ բան շշնջում: Բոլորը հռհռում են:

— Ճամփա՜ տվեք, գալիս է մե՜ծ Ռուսաստանը,— բղավում է մեկը:

Վերստին հռհռոց, նորից խայթող քրքիջ:

— Գրիշա, մախորկան թողեցի տանը, գնա բեր:

Տղան վազելով գնում է: Սպաները շրջապատում են կույրին:

— Ո՞ւր ես գնում, Ռուսաստան քեռի:

Դարձյալ հռհռոց:

— Ես այստեղ եմ մնալու, դուք ձեր մասին մտածեք:

Վասիլիի աջ ձեռքը շարժվում է գրպանում: Լսվում է ահեղ մի պայթյուն: Տասնյակ սպաներ ու զինվորներ անշնչանում են գետնին: Գրիշան սարսափահար փողոց է նետվում: Նա ուզում է գնալ որոնելու իր հոր դիակը, բայց նկատելով դեպի իրենց տունը վազող այն երկու գերմանացիներին, շտապ բակ է մտնում, ցանկապատից ցատկում այգին ու փախչում մոտակա անտառը: Երբ նա ետ նայեց, իրենց խրճիթն արդեն հրի ճարակ էր դարձել: Ու նա շարունակեց իր ճանապարհը, ձյուների վրա թողնելով իր ոտնահետքերը՝ խոր ու հաստատուն:

# Ուսուցիչը



ԳՐԻԳՈՐ ՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Դեռևս ձյունով ծածկված լեռներից փչում էր սառը քամին, սուրալով անցնում Ելենովկայի փողոցներով ու ներխուժում Սևանա լիճը։ Դիլիջանի որբանոցներից փախած կիսամերկ, սոսորբիկ բազմաթիվ երեխաներ կուչ էին եկել տների անկյուններում, պատերի տակ, իսկ շատերն էլ քաղցից ուռած դեմքերով, բոլորովին անուժ ու հիվանդ, փռվել էին ուղղակի փողոցում և թույլ ձայնով տրտնջում էին.

— Հա՜ց...

Շատերն անցնում էին անտարբեր, իսկ ոմանք կանգ էին առնում, մի հայացք գցում որբ ու անօգնական երեխաների վրա և աշխատում էին շուտ հեռանալ։ Ի՞նչ կարող էին անել, երբ թուրք զավթիչներից հալածված, իրենք էլ էին փախստական և հացի կարոտ։ 1918 թվականին ամբողջ Հայաստանն էր այդ վիճակի մեջ։

Փախստականներից միայն մեկը կանգ առավ Ելենովկայում, երկար շրջեց ցնցոտիապատ երեխաների մեջ և չկարողացավ այլևս ճանապարհը շարունակել։ Դա Դիլիջանի որբանոցներից մեկի նախկին կառավարիչ Տիգրան Ճանբազյանն էր, կապուտաչյա մի երիտասարդ, որ նույնպես փախչում էր Հայաստանի խորքը։ Մի ինչ-որ ուժ նրան պահում էր Ելենովկայում, և նա չէր կարողանում իր ճանապարհը շարունակել։ Պետք էր օգնել որբերին, բայց ինչպե՞ս, ի՞նչ կարող էր անել նա մենակ։ Մոլոր քայլերով նա անցնում էր փողոցից-փողոց, մտածում ցրտից կապտած, սովահար երեխաների խմբերին և արտասուքը հազիվ էր զսպում իր կապույտ աչքերի մեջ։ Վերջապես նա պատահմամբ կանգ առավ մի լքված զորանոցի մոտ։ Հսկայական շենքը դատարկ էր, թեև դռները փակ էին։ Եվ այստեղ նրա գլխում մի միտք ծագեց. իսկ ի՞նչ կլինի, եթե որբերին հավաքի այստեղ և կազմակերպի նրանց սնունդը, ուսուցումը։ Մի պահ նա այս մտքից սարսափեց։ Իր մոտ եղած փողերը հազիվ թե այդքան որբերին մի երկու շաբաթ բավականացնեին։ Իսկ հետո, հետո՞ ինչ էր լինելու։ Սակայն որոշումն արդեն ընդունված էր։ Նա հավաքեց մեծահասակ որբերին ու ասաց.

— Թուրք զավթիչները ուզում են կոտորել մեզ, բնաջնջել, բայց մենք չպետք է թույլ տանք, որ նրանք հասնեն իրենց նպատակին։ Եթե մենք փրկենք այս որբերին, նվիրական գործ կատարած կլինենք մեր ժողովրդի համար։ Ես ուզում եմ օգնել ձեզ, բայց դուք էլ պետք է օգնեք ինձ։

Մեծահասակ որբերն անմիջապես գործի անցան, և ահա լքված զորանոցն սկսեց կենդանանալ։ Երեխաները պատսպարվեցին ցրտից և սկսեցին [illegible] սնունդ ստանալ։

Կարծես թե ամեն ինչ կարգին էր, բայց որբերից միայն քչերը գիտեին, որ Ճանբազյանը ծախսում է իր սեփական խնայողությունները և որ շուտով դրանք վերջանալու են։ Որտեղի՞ց պետք է միջոցներ ճարեին երեխաների կյանքին հետագայում ապահովելու համար։

Եվ ահա մեծահասակ տղաներից կազմված մի պատվիրակություն մեկնում է Երևան՝ մթերք հայթայթելու նպատակով, սակայն վերադառնում է ձեռնունայն։ Երևանում դրությունն այն ժամանակ ավելի վատ էր։ Փողոցները լի էին սովահար փախստականներով։

Ի՞նչ կարելի էր անել։ Որբերը ոչ միայն կմնային քաղցած, այլև կկորչեր մինչև այժմ թափված աշխատանքը։ Ամբողջ գիշերը Ճանբազյանը մնաց արթուն։ Նա խորհում էր, չափում-ձևում, բայց որևէ ելք չէր կարողանում գտնել։ Առավոտյան նա մի պատվիրակություն ուղարկեց կցղի՝ փախստականների մոտ։ Այն ժամանակ Սևանի վանքը շատ անասուններ ուներ իր տրամադրության



տակ։ Ելենովկայից երևում էին կղզու լանջերին արածող նախիրները։ Շահբազյանը մտածեց, որ գուցե փախստականները մտնեն որբերի դրության մեջ և մի քանի գլուխ անասուն ուղարկեն նրանց կերակրելու համար։ Սակայն նրա հույսերը չարդարացան։ Փախստականները նույնպես մնացին անտարբեր։

Արդեն երկու օր էր, ինչ որբերը չնչին ուտելիք էին ստանում։ Բոլոր փողերը ծախսված էին, և այլևս հնարավոր չէր մթերք գնել։ Հուսահատված որբերը արդեն սկսել էին մեկ-մեկ փախչել զորանոցից՝ հույս ունենալով, թե դրսում կկարողանան սնունդ հայթայթել։ Հուսահատվել էր նաև Շահբազյանը։ Նա մտքում զանազան ծրագրեր էր մշակում, սակայն ոչինչ չէր կարողանում որոշել։ Ի՞նչ կարող էր անել մի մեծ սրտի տեր մարդ, երբ եկեղեցին անգամ բաց անտարբերություն էր ցուցաբերում։

Ահա այդ ժամանակ էր, որ որբերից մի քանիսը վազելով եկան ու ասացին, որ Անդրանիկ Զորավարը վրաններ է խփել Բայազետի ճանապարհի վրա:

Շահբազյանը թեթևացած շունչ քաշեց: Նա համոզված էր, որ Անդրանիկը կօգնի որբերին, որ նա չի կարող անտարբեր մնալ հազարավոր որբերի ճակատագրի նկատմամբ:

Եվ ահա նա մտահոգ մտնում է Անդրանիկ Զորավարի վրանը: Իսկույն զեկուցում են Տիգրան Շահբազյանի մասին, և Անդրանիկը ընդունում է նրան:

Անդրանիկի մոտ գնալիս՝ ուսուցիչը մտքում կրկնում էր այն խոսքերը, որ պետք է ասեր նրան: Նա որոշել էր ամեն բան սկզբից պատմել, բայց որքան եղավ նրա զարմանքը, երբ Անդրանիկն ասաց.

— Այդ դո՞ւ ես Շահբազյանը:

— Այո՛, Զորավար, ես եմ:

— Շատ մեծ գործ ես արել, շա՜տ մեծ, հայ ժողովուրդը չի մոռանա ձեր երախտիքը:

Այսպես, ամեն ինչ պատմելու հարկ չեղավ: Անդրանիկն ինքն էր արդեն իմացել Տիգրան Շահբազյանի կատարածի մասին: Իմացել էր նաև որբերի ներկա վիճակի մասին: Բայց Զորավարը միայն մի քանի օրվա հաց կարողացավ տրամադրել երեխաներին: Ավելին չուներ: Այնուհետև ավտոմեքենաներ տրամադրեց Դիլիջանից սննդամթերք և հագուստ տեղափոխելու համար:

Մի քանի մեծահասակ որբեր ավտոմեքենաներով մեկնեցին Դիլիջան, բայց պահեստները թալանված էին, և միայն կարողացան հագուստ տեղափոխել Ելենովկա: Դա էլ բավական էր, որպեսզի որբերը որոշ ժամանակ ապահովված լինեին:

Սակայն որբերի վիճակը դարձյալ ծանր էր մնում: Ավելի քան հազար հինգհարյուր որբերի համար զորանոցը նեղվածք էր և Ելենովկայում այլևս հնարավոր չէր սնունդ ճարել: Շահբազյանը ելք էր որոնում և գտավ այդ ելքը: Ճիշտ է, դա շատ հանդուգն քայլ էր լինելու և կարող էին իրեն պատասխանատվության ենթարկել, բայց որբերին օգնելու ցանկությունը շատ ավելի մեծ էր, և նա վճռեց դիմել այդ քայլին: Նա որբերին տեղափոխեց Ծաղկաձոր և գրավեց Երևանի հարուստների ամառանոցները, որ այդ ժամանակ դատարկ էին: Մեծ դժվարությամբ նա կարողացավ տեղավորել որբերին, կազմակերպել նրանց սնունդն ու ուսուցումը, բայց ամենադժվարին արդեն արված էր. հազար հինգհարյուր որբի կյանք փրկված էր:

Դաշնակցական կառավարությունը Շահբազյանին դատի տվեց, բայց որբերը, որ շատ էին սիրում իրենց ուսուցչին, ցույց կազմակերպեցին նրան ազատելու համար: Եվ եթե չլիներ սովետական իշխանությունը, Տիգրան Շահբազյանն իր կատարած մեծ գործի համար պետք է բանտ նստեր:

* * *

Այժմ վաստակավոր ուսուցիչ Տիգրան Շահբազյանը հիսնամյա մանկավարժական գործունեությունից հետո թոշակի է անցել, բայց նրան չեն մոռացել այն որբերը, որոնց նա փրկեց մահվան ճիրաններից: Չեն մոռացել նաև նրա հազարավոր աշակերտները, որոնցից շատերը հետագայում դարձան նշանավոր գրողներ, պետական ու հասարակական գործիչներ, գիտնականներ: Նրան չի մոռացել մեր ժողովուրդը:

Դեռևս Ծաղկաձորում, ուր ծածուկ ապաստանած էին հեղափոխական գործիչները, նշանավոր հեղափոխական Բագրատ Ղարիբջանյանն ասաց. «Ներկայումս ազնիվ մարդիկ բացառություն են կազմում, դու նրանցից մեկն ես: Կգա օրը, երբ բացառություն կկազմեն անազնիվ մարդիկ և այն ժամանակ քո այս երախտիքը ժողովուրդը չի մոռանա»:

## ԱՇՆԱՆԱՅԻՆ



ՎԱԶԳԵՆ ԱԽԱԲԵԼՅԱՆ

Տերևները խշշոցով
Մեր այգու դուռը բացին.
Եվ բռնկվեց ու բոցով
Իմ լավ, փոքրիկ իմ այգին:

Գագաթները ճերմակ
Ձյունե գլխարկ են դնում.
Բայց գիշերը ամեն օր
Դաշտերին ցող է ցանում:

Առվին ճյուղը ամփոփած
Ջրերի մեջ է թաղում.
Մարգի միջի խոտը դալար
Մի գառնուկ է արածում:

Մուժոտ լեռներն են թախծում
Անձրևը իջնում է մեղմիկ.
Հիմա մամուռ է կրծում
Անտառի մեջ մի եղնիկ:

# Ցորդի որսը

Ջ. ԽԱԼԵՐԻՆԳՏՈՆ

(Ավստրալիական գրող)

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ամառվա տոթ երեկո էր: Մենք իջանք բլրաշատ փոշոտ ճանապարհով այնտեղ, որտեղ հատ ու կենտ ճրագներով լուսավորված էր ավանի գլխավոր փողոցը:

— Հիշի՛ր, Սկերին մեր առաջնորդն է,— ասացի ես իմ նոր ընկերոջը:

— Լավ,— պատասխանեց նա:

— Սկերին ուժեղ է,— բացատրեցի ես,— մեր դպրոցում, ում ուզես, կարող է ծեծել: Եթե նա քեզ չընդունի մեր խմբի մեջ, նշանակում է, վե՛րջ:

— Լա՛վ,— ասաց նա,— հասկանալի է:

Ես մի քիչ հուզված էի, որովհետև առանց Սկերինին նախազգուշացնելու՝ ինձ հետ վերցրել էի ընկերոջս: Տիմ Կոննորի հայրն ու իմ հայրը աշխատում էին սղոցարանում, միևնույն հաստոցի մոտ: Կոննորների ընտանիքը բնակություն էր հաստատել մեր կողքին, բարձունքի վրայի տնակում: Տիմ Կոննորը սովորական տղա էր, գլխի ոզնաձև խուզվածքով և պեպենոտ երեսով, մի խոսքով, առանձնապես ոչինչ չկար նրա՛ մեջ: Բայց մենք նրա հետ սովորում էինք նույն դասարանում և իմ հայրը ինձ խնդրել էր Տիմի նկատմամբ լինել ուշադիր, մինչև որ նա վարժվեր նոր շրջապատին:

Մենք մտանք ավանը, թեքվեցինք գլխավոր փողոցը ու շարժվեցինք դեպի Տալյանոյի մրգի կրպակը, որի պատուհանից ճանապարհի վրա պայծառ լույս էր ընկել: Դա ավանում միակ տեղն էր, որտեղ մինչ ուշ գիշեր կենդանություն էր տիրում:

Մեր խումբը, սովորաբար, հանդիպում էր այդ խանութի մոտ: Մենք խաղում էինք ու վազվզում այս ու այն կողմ, մինչև երևում էր Սկերին՝ մի որևէ նոր չարաճճիություն մտքում:

Սկերին ուժեղ էր ու հանդուգն: Եվ ոչ ոք չէր ձգտում նրան զրկել մեզ ղեկավարելու իրավունքից: Մեզ նույնիսկ թվում էր, թե դպրոցի դասատուներն էլ վախենում են նրանից:

Սկերիի հայրն ու եղբայրները անտառահատ էին, դաժան մարդիկ, և ոչ ոք չէր համարձակվում որևէ խնդրում նրանց խոչընդոտ հանդիսանալ: Սկերին ամբողջովին նրանց էր քաշել, միայն ավելի երիտասարդ էր:

Երբ մենք Տիմի հետ մոտեցանք Տալյանոյի կրպակին, այնտեղ հավաքվել էին արդեն մեր տղաներից երեքը: Նրանք Տիմին ճանաչում էին դպրոցից, բայց լավ ծանոթ չէին, ուստի նրա հետ բարևեցին այնպիսի մի թաքուն կասկածանքով, որ սովորաբար նկատվում է երեխաների ու կատուների մոտ:

— Ի՞նչ ենք մենք այսօր անելու,— հարցրեցի ես Տիպ Խեմբերին:

— Չգիտեմ,— պատասխանեց նա,— Սկերին որևէ բան կմտածի:

Տաս րոպեի ընթացքում մեզ միացան դարձյալ չորս տղա: Բոլորս սպասում էինք Սկերիին: Վերջապես նա եկավ: Սկերին ու մենք հասակակիցներ էինք, բայց նա բարձրահասակ էր: Վտիտ տեսքով, ամրակազմ, թիկնեղ, գետաքարի նման մեծ բռունցքներով: Սկերիի համառ, նիհար երեսը մեծ մարդու դեմք էր հիշեցնում, թեև նա ընդամենը տասներեք տարեկան էր: Սկերիի ծեռքին ճոճվում էր մի չվառած լապտեր: Մենք բոլորս, որ մինչև Սկերիի գալը ազատ նստած էինք, անմիջապես ոտքի կանգնեցինք:

— Ողջո՛ւյն Սկերիին:

Սկերին իր խոշոր, սև աչքերով արագ նայեց բոլորիս: Նրա հայացքը կանգ առավ Տիմի վրա, և նա հարցրեց.



— Ո՞վ է:

Եվ, մինչ ես կբացատրեի, թե ինչպես է Տիմը ընկել մեր խումբը, Սկերին անթարթ աչքերով նայում էր ինձ: Հուզմունքից հազիվ էի լեզուս շարժում, ու խոսքերը կոկորդումս էին մնում: Սկերին շրթունքները սեղմեց: «Հիմա նա կվռնդի Տիմին»— մտածեցի ես: Մի քիչ դանդաղելով՝ Սկերին հարցրեց.

— Մեր տղաների՞ց է:

— Մերոնցից է,— հաստատեցի ես:

Ես նայեցի Տիմին ու ժպտացի, սակայն նա դրան ուշադրություն չդարձրեց: Տիմը նայեց Սկերիին, կարծես չիմանալով, թե ինչ պատիվ ցույց տվե-

ցին իրեն։ Դա ինձ զայրացրեց։ Սկերին ասաց.

— Այսօր կգնանք գետափ։

Մենք շարժվեցինք փողոցի երկայնքով։ Առջևից քայլում էր Սկերին՝ հանգած լապտերով։ Մնացած տղաները գնում էին նրա հետևից միմյանց բոթելով ու կատակներ անելով։ Բոլորն ուրախ էին, ոգևորված, նախօրոք վայելելով առաջիկա արկածների հաճույքը։

Ավանը թողնելով հետևում, մենք դուրս եկանք գետի վրայից անցնող կամուրջի մոտ։ Մեզ շրջապատեց մութ, խավար գիշերը։ Սկերին լապտերը դրեց կամրջի բազրիքի վրա, գրպանից հանելով լուցկին, պտտեց ու վառեց այն։ Թույլ կրակը լուսավորեց մեր դեմքերը ու արտացոլվեց դողդողուն ալիքների վրա։

Գիշերային անդորրության մեջ լսվում էր անհամար գորտերի տխուր ու չարագուշակ կռկռոցը։

— Հավանական է լավ որս կլինի,— ասաց Սկերին։— Վերցրու լապտերը, Դի՛կ, իսկ դուք բոլորդ մեր հետևից եկեք։

Ենթարկվելով հրամանին՝ Դին Ռայդերը վերցրեց լապտերն ու մոտեցավ գետին։ Սկերին, զինված հաստ, չոր ճեռնափայտով, հետևեց Դիկին, իսկ Տիմ Կոննորն ու ես գնում էինք վերջից։

Մենք շարժվեցինք գետի երկայնքով, աշխատելով քայլել ավազուտների եզրով, որտեղ ջուրը հասնում էր մինչև մեր ոտքերի կոճերը։ Բոլորի առջևից գնում էր Դիկը։ Նա բարձր բռնել էր լապտերը, ու լույսը ջրի վրայով տարածվում էր դեպի թփուտներով ծածկված ոլորուն ափը։ Հարյուր մետր դեռ չէինք անցել, երբ Սկերին Դիկին հրամայեց կանգ առնել։ Սկերին չոքեց ու փայտով ափի մոտ, գետաքարերի մեջ փորեց մի փոքր փոս։ Փոսը անմիջապես լցվեց ջրով։

— Այստե՛ղ լուսավորիր, Դիկ,— հրամայեց Սկերին։

Դիկը լապտերն իջեցրեց մինչև ջրի մակերեսը։ Եվ այստեղ Սկերին հանկարծ հիացմունքից ճչաց։ Փայտով փորփրեց ու փոսից դուրս հանեց մի մեծ գորտ։ Գորտը շրմփաց չոր ավազի վրա։

— Ահա՜ նա,— բացականչեց Սկերին։— Խփի՛ր։

Նախ Սկերին, իսկ ապա բոլոր տղաները բռները լցրեցին քարերով։

— Դի՛կ, լո՛ւյս արա,— ճչաց Սկերին ու առաջինն ինքը քարը նետեց։

Քարը գորտին չհասավ և, ընկնելով ցած, ավազի մի ամբողջ շատրվան բարձրացրեց։ Գորտը փորձեց տեղից շարժվել, բայց կանգ առավ ու ծանր շնչեց։ Սկերին միմյանց հետևից շտապ նետեց երկու քար։ Մեկը ջարդեց գորտի ոտը, իսկ մյուսը կպավ ուղիղ գլխին։

— Խփում եմ անվրե՛պ,— գոչեց Սկերին։— Իմ հետևից, տղե՛րք։ Հիմա մենք էլի գորտ կգտնենք։

Լապտերից լույսը ընկել էր Սկերիի երեսին, ու նրա միշտ սառը աչքերը այժմ վառվում էին հուզմունքից։ Ես ատելությամբ նայեցի Սկերիին, նրա մեջ կար այն ամենը, ինչը ես ատում էի։ Սակայն ես լավ գիտեի, որ երբեք համարձակություն չեմ ունենա դա արտասանել բարձրաձայն, որովհետև մնացած երեխաները ինձ վրա կծիծաղեն ու ինձ կկոչեն փսլնքոտ, կգնան իրենց առաջնորդ Սկերիի հետևից։



Անսպասելի կերպով ինչ-որ մեկն ասաց.

— Սա՞ է հենց կոչվում գորտերի որս։

Սկզբում ես չիմացա, թե ով ասաց այդ խոսքերը։ Դա ինչ-որ կողմնակի ձայն էր։ Եվ հանկարծ ես հասկացա, այդ հարցը տվեց Տիմ Կոննորը, որի համար ես երաշխավորեցի ու ես էլ պետք է պատասխան տայի Սկերիին։ Երբ Սկերին սառը տոնով հարցրեց. «Այն ո՞վ հա՛րցրեց»,— իմ սիրտը նույնիսկ թփրտաց։

Տիմ Կոննորը առաջ եկավ։ Նա Սկերիից ավելի ցածրահասակ էր։ Դեպքերի միջից նկատվում էր, թե ինչպես է Տիմը կարմրել, սակայն չերևաց, որ նա վախեցած է։

— Ե՛ս,— ասաց Տիմը։

Սկերին սեղմեց բռունցքն ու հարձակվեց նրա վրա, բայց Տիմը ճարպկորեն ետ մղեց առաջին իսկ հարվածները։ Սկսվեց տուրուդմփոցը։ Տիմը ճկուն ու ճարպիկ էր, սակայն Սկերին կռվում էր գազանի պես։ Նրա ամուր ու նիհար մարմնի յուրաքանչյուր մկանը ձգտում էր միայն մի նպատակի՝ ոչնչացնել Տիմին։ Մի րոպեից հետո Տիմի քթից արյուն էր հոսում, իսկ աչքի տակ արյունոտ քերծվածք կար։ Եվս մի քանի ուժեղ հարված, ու Տիմը գլորվեց ջրի մեջ։

Սկերին նայեց բոլորիս, երկու մատով քիթը սրբեց ու ասաց.

— Դե, չգնա՞նք։ Առաջ արի, Դի՛կ։

Սկերին պարծանքով իրեն հաղթող էր ձևացնում, որ կարողացավ պատժել նրան, ով համարձակվեց զրկել իրեն անառարկելի առաջնորդի իրավունքից։ Սկերիի հայացքը ասում էր. «Էլ ո՞վ ձեզնից կհամարձակվի խռովություն սարքել»։

Սկերիի տեսքը ինձ վախեցրեց։ Ես միշտ նրանից վախենում էի։ Սակայն հանկարծ, ինձ համար անսպասելի, ես լսեցի իմ սեփական ձայնը.

— Մի՞թե սա խաղ է։

Սկերին եկավ իմ կողմը, նրա ողջ կերպարանքը ոչ մի լավ բան չէր խոստանում։ Բայց հանկարծ մի քանի տղա անցան իմ կողմը։ Սկերին կանգ առավ ու հերթով նայեց նրանց։ Նրա աչեղ

տեսքից հետք անգամ չմնաց: Սկերիի դեմքը արտահայտում էր հուզմունք ու շփոթություն:

Այո, նա կարող էր ջարդել յուրաքանչյուրիս առանձին-առանձին, բայց բոլորիս միասին նա հաղթել չէր կարող: Եվ Սկերին այդ գիտեր:

Տիմ Կոննորը վեր կացավ ու, ձեռքով սրբելով արյունոտ երեսը, գնաց խավարի կողմը: Սկերին չփորձեց նույնիսկ նրան կանգնեցնել: Նա շրջվեց դեպի Դիկը և որպես մարտահրավեր բոլորիս, ասաց.

— Գնանք, Դիկ, թող այս փսլնքոտներն անեն այն, ինչ որ կամենում են:

Սակայն Դիկ Ռայդերը լապտերը դրեց ավազի վրա, սպանված գորտի մոտ:

— Ես գնում եմ տուն,— ասաց նա ու գնաց ներքև, գետի ուղղությամբ:

Տիմ Կոննորն ու ես հետևեցինք նրան: Մենք զգում էինք, որ մնացածները նույնպես գալիս են: Նրանց ոտքերի տակ չխչխկում էին գետաքարերը: Կամրջի վրա ես ետ նայեցի: Սկերին առաջվա պես կանգնել էր միայնակ ու նայում էր մեր հետևից: Այդ վայրկյանին Սկերին նման էր պարտված գեներալի, որին զինվորները թողել էին մարտի դաշտում:

Ես մի քիչ առաջ ընկա Տիմից ու վազելով առաջինը մոտեցա Տալյանոյի կրպակի լուսավորված



պատուհաններին, որտեղ նարինջի, խնձորի ու բանանի բուրգեր կային: Այստեղ վազքից շնչակտուր եղած, մենք կանգ առանք ու երկուսս էլ ծիծաղեցինք: Եվ Տիմը, իր դեմքի արյան հետքերով, ինձ թվաց Սկերիից շատ ավելի ուժեղ:

Ռուս. թարգմ. ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...



ԱՄՊՐՈՊՆԵՐ բոլորից շատ լինում են Ճավա կղզում, Բյուտենզորգ շրջանում, որտեղ տարվա 322 օրը փայլատակում են կայծակները: Ամերիկայի Կալիֆոռնիա նահանգի Սանտա Մարիա քաղաքում գրեթե ամպրոպներ չեն լինում:

* * *



ԱՇԽԱՐՀԻ ամենաբարձր ջրվեժը կոչվում է Անխել, որը գտնվում է Զուրուն գետի հոսանքում: Այստեղ ջուրը թափվում է հազար 54 մետր բարձրությունից:

* * *

ՀԱՎԱՅԱՆ կղզիները աստիճանաբար ծածկվում են ջրով: Եթե երկրի կեղևը մնա անփոփոխ, ապա այս կղզիների ամենաբարձր լեռները ջրերի հորձանուտում կլինեն 70 միլիոն տարուց հետո: Իսկ Կանադայի Բաֆֆինովայի հողերն ընդհակառակը, բարձրանում են ծովի մակերևույթից. հարյուր տարին՝ երկու մետր:

* * *

ԱՆՏԱՐԿՏԻԴԱՅԻ մի շարք ալսբերգներ (լողացող սառցալեռներ) ունեն 180. կիլոմետր երկարություն, նույնքան էլ՝ լայնություն: Ջրից բարձր են 40 մետր: Յուրաքանչյուր այդպիսի սառցալեռան մեջ կա այնքան ջուր, որքան կարող է ստացվել, եթե հավաքեն ամբողջ Վոլգայի ջրերը տասնյակ տարիներ շարունակ: Մաքրությամբ այս ջրերը մոտենում են թորած ջրին:

* * *



ՊԻՆԳՎԻՆՆԵՐԸ Անտարկտիդայի ամենահին բնակիչներն են: Սառցադաշտերում հայտնաբերված նրանց կմախքներն ունեն 15—20 միլիոն տարվա պատմություն: Այս պինգվինները ապրել են դեռևս առաջին մարդուց տասնհինգ միլիոն տարի առաջ:

## ՀՈԿՎԱՐԻ ԴՊՐՈՑ

### Առաջին դաս

Դպրոցի կոմերիտական կազմակերպության կոմիտեի և պիոներական դրուժինայի խորհրդի առաջ դու պատասխան ես տալիս քո խմբի հոկտեմբերիկների հետ կատարվող ամբողջ աշխատանքի համար: Հոկտեմբերիկական խմբի հավաքույթն անց ես կացնում դու՝ նրա ջոկատավարը: Բայց աշխատանքը հոկտեմբերիկների հետ տարվում է ոչ այնքան խմբի ընդհանուր հավաքույթում, որքան՝ աստղիկներում: Այդ պատճառով քեզ անհրաժեշտ է մշտապես և հմտորեն ղեկավարել աստղավարներին, ուղղություն ցույց տալ և օգնել նրանց:

Ավելի լավ է դա կատարել հոկվարների խորհրդի միջոցով, որի մեջ մտնում են բոլոր աստղավարները: Այդ՝ խորհրդի նախագահը հանդիսանում ես դու: Խորհրդի նիստին մասնակցելու համար հաճախակի հրավիրիր ավագ ջոկատավարներին, այն դասարանի ուսուցչուհուն, որտեղ սովորում են քո հոկտեմբերիկները, քեզ օգնող, գործիմաց պիոներներին, հոկտեմբերիկական խմբին ամրացված ջոկատի խորհրդի նախագահին:

Սկզբում դուք պետք է հավաքվեք հաճախակի, ասենք՝ շաբաթական մեկ անգամ: Հետագայում, երբ աշխատանքը կարգավորվի և աստղավարները ձեռք բերեն որոշ փորձ, դուք կարող եք սահմանափակվել ամսական երկու պարապմունքով:

Խորհրդի յուրաքանչյուր նիստում որոշեցեք, թե գալիք շաբաթ ինչով պիտի զբաղեցնեք հոկտեմբերիկներին: Աստղավարները համառոտակի կպատմեն, թե աստղիկներում ինչպես է գնում աշխատանքը, ինչ դժվարությունների են հանդիպում իրենք: Ուշադրությամբ լսիր յուրաքանչյուրին, ջոկատավարներին հնարավորություն տուր պատմելու, թե իրենք ինչպես են հաղթահարում դժվարությունները, մտքերի և փորձի փոխանակություն կատարիր, աշխատիր նրանց լավ խորհուրդ տալ և օգնել՝ դժվար դրությունից դուրս գալու համար: Եթե ինքդ դժվարանում ես, խնդրիր ավագ ջոկատավարին կամ ուսուցչուհուն՝ օգնելու քեզ:

Հիշի՛ր, ջոկատավարների խորհրդի նիստ դու գումարել ես ոչ միայն նրա համար, որպեսզի նրանք փորձի փոխանակության կամ միմյանց խորհրդակցելու հնարավորություն ունենան, այլև նրա համար, որպեսզի դու կարողանաս նրանց սովորեցնել այս կամ այն գործը:

Եթե դուք որոշել եք աստղիկների հավաքույթներում անցկացնել խաղեր, ապա նախօրոք այդ խաղերն անցկացրու աստղավարների հետ:

Մի՛ մոռացիր, որ դու, որպես խմբի ղեկավար, պարտավոր ես իմանալ ավելի շատ, քան աստղավարները: Այդ պատճառով պարբերաբար կարդա գրականություն, ճշտապահորեն հաճախիր դրուժինային կամ պիոներների տանը կից գործող հոկվարների սեմինարներին, աշխատիր իմանալ շատ խաղեր, երգեր, ֆիզկուլտ-վարժություններ:




## ԱՐԾԱԹԵ ԳԵՐԲԸ

*Ո՞վ չի հիացել սովետական սկանավոր գրող Կոռնեյ Չուկովսկու զվարճալի հեքիաթներով, ձեզանից ո՞վ դեռևս փոքր հասակում անգիր չի արել նրա հռչակավոր «Զուխչուփիկը»: Հիշու՞մ եք, չէ՞, այդ հեքիաթը՝ փնթի ու անլվա տղայի մասին:*

*Իսկ այսօր, երբ դուք արդեն պատանի եք, մի նոր հանդիպում կունենաք ձեր սիրելի մանկագրի հետ: Ութսունն անց է արդեն գրողը, երկար ու բեղմնավոր կյանք է ապրել նա, գրել է բազմաթիվ աշխատություններ գրականության տարբեր հարցերի մասին, կատարել հիանալի թարգմանություններ խորոպական հռչակավոր գրողներից, բայց երբեք չի մոռացել իր մանուկ ու պատանի ընթերցողներին: Հիմա*




*էլ հիշել է դպրոցական տարիները, և ինչպես ինքն է ասում՝ «Մերունուց դարձել է մանուկ», գրիչը վերցրել է ձեռքը ու գրել «Արծաթե գերբը» ինքնակենսագրական վիպակը: Ինքն էլ է խոստովանում, որ իրեն երջանիկ է զգում, երբ գրում է պատանի բարեկամների համար ու ավելի երջանիկ կզգա, եթե կարդալով այդ գիրքը, ընթերցողները իր հետ միասին սիրեն նրա պատանեկության լավագույն ուղեկիցներին՝ ազնիվ ու համեստ աշխատավոր մարդկանց և բուռն ատելությամբ լցվեն «այն խավար ու դաժան դարաշրջանում» տզրուկի կյանք վարող հարուստների ու նրանց ամբարտավան որդիների նկատմամբ:*

*Իսկ սիրելու և ատելու առիթներ գրքի ընթերցա-*

նության ժամանակ շատ կան: Բոլորի նման նա էլ է գիմնազիա հաճախել ու դպրոցականին հատուկ չարություններ արել. արել են բոլորը, բայց դպրոցից հեռացրել են միայն նրան, պատճառելով մեծ վիշտ: Նրանից երես են թեքել ընկերներից շատերը, որոնց նա առաջ հավատում էր, նրան դպրոցին մոտիկ չեն թողնում, ասելով, որ «հարամ ոչխարը ամբողջ հոտը կփչացնի»: Երկար ժամանակ տանջվում է նա, չի կարողանում հասկանալ, թե որն է իր մեղքը:

Նրա հետ են հավատարիմ ընկերները՝ Տիմոշան ու Մուսյան, բայց նրանք էլ ոչինչ անել չեն կարող: Եվ ահա նրա աչքերը բաց է անում իր սիրելի ուսուցիչը՝ Իվան Միտրոֆանովիչը, որին նույնպես հեռացրել են դպրոցից: Պարզվում է՝ նրանց մեղքն այն է, որ...

Բայց ավելի լավ կլինի, որ չշարունակենք: Չէ՞ որ դուք ինքներդ էլ կկարդաք այդ գիրքը, որը նոր է լույս տեսել, և կիմանաք, թե որն էր գրքի հերոսի «հանցանքը», որի համար նրան գիմնազիայից հեռացրել էին, կիմանաք, թե ինչպիսի կարգեր էին տիրում ցարական դպրոցում: Դուք էլ հերոսի հետ կվշտանաք, նրա հետ տխուր կթափառեք փողոցներում, անզուսպ ատելությամբ կլցվեք չար ու անսիրտ մարդկանց նկատմամբ, նրա հետ անքուն գիշերներ կանցկացնեք դասագրքերի վրա և կհիանաք նրա համառությամբ ու կուրախանաք նրա հաջողության համար: Դուք կհամոզվեք, թե որքան թեթև ու հրապուրիչ է կյանքը, երբ մարդ ազնիվ է է լինում ու հպարտ, գլուխ չի թեքում անարդարության ու չարության առաջ:

Իսկ այդ էլ հենց մեր սիրելի, ճերմակահեր գրողի՝ Կորնեյ Չուկովսկու ցանկությունն է, նրա երջանկության աղբյուրը:

ՎԱՀԵ ԵՐԿԱՆՅԱՆ

## ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԱՐԿՂԻԿ

Դավիթը մաթեմատիկա շատ է սիրում: Նրան իրենց դասարանում «Մաթեմատիկոս» են կոչում, իսկ թվաբանության ուսուցիչ ընկեր Սարգսյանը մի անգամ նույնիսկ նրան անվանեց Դավիթ Անհաղթ, որովհետև ամենադժվար խնդիրներն անգամ նա իսկույն լուծում է:

Ճիշտ է, Դավիթը արտակարգ ընդունակության տեր պատանի է, բայց դրանում չէ միայն նրա հաջողության գաղտնիքը. Նա չափազանց աշխատասեր է և համառ բնավորություն ունի, վերցրած խնդիրը մինչև չլուծի, ձեռք չի քաշի: Իսկ եթե իր ուժերից վեր է, նա չի քաշվում հարցնել ուրիշներին, բարձր դասարանների աշակերտներին:

Դավիթը չի բավականանում միայն դասերով և տնային հանձնարարությունների կատարումով. Նա փնտրում գտնում է հետաքրքրաշարժ մաթեմատիկայի զանազան գրքեր ու դրանցով մարզում իր ուղեղը: Եվ որքա՜ն ուրախացավ նա, երբ գրախանութից գնեց Ֆեոդոր Նաբիգինի «Մաթեմատիկական արկղիկ» գիրքը, որը հենց նոր էր հրատարակվել:




Առաջին իսկ էջերից գիրքը հափշտակեց Դավթին: Այնտեղ տպված էին սովետական նշանավոր մաթեմատիկոսների լուսանկարները և հակիրճ կենսագրական տեղեկություններ նրանց մասին:

Ահա Լև Պոնտրյագինը, որը տասնչորս տարեկան հասակում զրկվում է տեսողությունից, սակայն դա չի խանգարում, որ նա ձգտի հասնելու գիտության բարձունքներին: Դեռևս դպրոցական նստարանի վրա նա ուսումնասիրում է բարձրագույն մաթեմատիկայի բազմաթիվ բաժինները: Ապա մեծ հաջողությամբ ավարտելով համալսարանն ու ասպիրանտուրան, քսաներկու տարեկան հասակում, մաթեմատիկոսների համամիութենական համագումարում, նա հանդես է գալիս իր հայտնագործությունների շարադրումով և իրեն դրսևորում որպես ականավոր գիտնական:

Ահա տաղանդավոր մաթեմատիկոս Սերգեյ Մերգելյանը, որը 15 տարեկան հասակում ավարտել է միջնակարգ դպրոցը, պետական համալսարանի հինգ տարվա կուրսն անցել է երեք տարում, իսկ ասպիրանտուրայի երեք տարվա դասընթացը՝ մեկ ու կես տարում: Քսան տարեկան հասակում Մերգելյանը դարձավ Երևանի համալսարանի պրոֆեսոր, իսկ քսանչորս տարեկան հասակում նա ընտրվեց ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ:

Երիտասարդ հասակում հռչակավոր գիտնականի համբավ են ձեռք բերել նաև մաթեմատիկոսներ Լև Շնիրելմանը, Սերգեյ Սոբոլևը և ուրիշները:

Կարդալով այդ գիտնականների մասին, Դավիթը մի պահ ընկավ երազանքների մեջ, ապա սկսեց մեկը մյուսի հետևից լուծել գրքում զետեղված հետաքրքրաշարժ խնդիրները:

Սիրելի պիոներներ, դուք ես հետևեցեք Դավթին: «Մաթեմատիկական արկղիկը» նման է այն հեքիաթային կախարդական արկղիկին, որ ձեր առջև բաց կանի նորանոր անծանոթ ու գրավիչ աշխարհներ:

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# «ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ»

## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Մրցանակաբաշխությանը մասնակցել է 314 դպրոցական՝ Հայաստանից, Լեռնային Ղարաբաղից, Վրաստանից և արտասահմանից։ Նրանցից 60-ը արժանացել են առաջին կարգի մրցանակի, 185-ը՝ երկրորդ կարգի, իսկ 69-ը մրցանակաբաշխությունից դուրս են մնացել՝ հարցերին սխալ պատասխանելու կամ պատասխանները ժամանակին չուղարկելու պատճառով։

Մրցանակ շահած՝ ընթերցողները պարգևատրվել են համապատասխան հուշաբերերով, գրականությամբ, ինչպես նաև «Պիոներ» ամսագրի մեկ տարվա և 6 ամսվա բաժանորդագրությամբ։

«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# Պատասխանում ենք

ՊԻՈՆԵՐ № 9

«ԽԱՉԲԱՌ-ՇԱՂԿԱԳԻՐ»— 1. Գուսան։ 2. Բյամանյա։ 3. Հայաստան։ 4. Երազ։ 5. Սաթյան։ 6. Տենոր։ 7. Բյուրեղի։ 8. Համաս։ 9. Սպարտակ։

Ծածկագիրը՝ Սայաթ-Նովա։

«ՏԱՍԸ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆ»— 1. Առաջին նկարում կա 5 աշտարակ, իսկ երկրորդում՝ 6։ 2. Կրիայի վրա նստած աղջիկը առաջին նկարում օձիք չունի։ 3. Կրիային բռնող թզուկը երկրորդ նկարում տարօրինակ է։ 4. Երկրորդ նկարում ծաղիկը տերև չունի։ 5. Առաջին նկարում աղավնի պոչը կարճ է։ 6. Կրիային հրող թզուկի մորուքը երկրորդ նկարում երկար է։ 7. Այդ թզուկը առաջին նկարում թևր չունի։ 8. Կրիայի վրա փռած շորերը տարբեր են։ 9. Կրիայի վզին երկրորդ նկարում օղակ կա։ 10. Առաջին նկարում կրիայի վրա նստած՝ աղջկա մի ոտքը ծածկված է։

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ.

ԼՅՈՒԴՄԻԼԱ ԴԱՆԻԵԼՅԱՆԸ, ԱՐԴԱ ՀՈՊԱԼՅԱՆԸ (Կիրովական), ԺՈՐԱ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ (Արում), ՄԱՏԼԵՆ ՇԻՐԻՆՅԱՆԸ (Բուլղարիա), ՉԱՐՉԱՆԴ ԲԻՉԱԽՉՅԱՆԸ, ԳԵՎՈՐԳ ԳԵՎՈՐԳՅԱՆԸ (Արթիկ), ՀԵՐԻՔՆԱԶ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ (Սպիտակ), ԽՈՉԱ ՎԱՐԴԱՆՅԱՆԸ (Կարմիր) և ուրիշները։

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

**Пионер**“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06։

ՎՖ 08977, Պատվեր՝ 1806, Տպաքանակ՝ 11.200, Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 29 X 1963 թ., ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91։

Գինը 20 կ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ.

չորրորդ էջը՝ նկ. ՎԱՉԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՆԵՎՍԿԻ

Իշխանի պալատի մոտ վաղ առավոտյան կանգ առավ մի ձիավոր։ Պահակները իսկույն ճանաչեցին իշխանի գլխավոր սուրհանդակին, որը միշտ կարևոր լուրեր էր բերում երկրի արևմտյան սահմաններից։ Ճռընչալով իսկույն բացվեց դարպասի երկփեղկ դուռը, և սուրհանդակը ներս մտավ։ Ախոռատան մոտ նա ցած թռավ ձիուց և վազքով դիմեց դեպի պալատի շքամուտքը։

— Իշխանը դեռ քնած է,— նրան ընդառաջ գալով ասաց սպասավորը ցածր ձայնով։

— Շուտ արթնացրե՛ք իշխանին, ասացեք, որ աղետի լուր եմ բերել։

Լսելով իր գլխավոր սուրհանդակի անունը, իշխան Ալեքսանդրը վեր թռավ անկողնուց և շորերը հագնելով դուրս եկավ նախասրահ։

— Տեր իմ, նորից մեծ դժբախտություն է կախվել մեր Ռուսիայի վրա,— փոքր-ինչ վերամբարձ տոնով սկսեց սուրհանդակը։— Գերմանացիները գալիս են Նովգորոդի վրա։ Նրանք արդեն ավերել են Բալթիկ ծովի ափերին գտնվող երկրները, տիրացել են Պսկով քաղաքին և գալիս են, գալի՛ս։ Շատ են նրանք, տեր իմ, շա՛տ...

Նովգորոդի իշխան Ալեքսանդրը խոժոռեց դեմքը։ Դրությունը օրհասական էր։ Հայրենի տափաստաններում, Վոլգայի ու Դոնի ափերին. իրենց տիրապետությունն էին հաստատել թաթար-մոնղոլները և փաստորեն իշխում էին ամբողջ Ռուսաստանի վրա։ Ասես քիչ էր արևելքից եկած թաթար-մոնղոլական լուծը, արևմուտքից էլ շվեդներն ու գերմանացիներն էին սպառնում։ Եվ իշխանի աչքի առջև պատկերացան. երկու տարի առաջ տեղի ունեցած դեպքերը։ Շվեդական նավերը մտել էին Նևա գետը, մեծ քանակությամբ ռազմիկներ հանել



ափ, որ տիրանային ռուսական հին քաղաք Նովգորոդին։ Ինքը բանակի գլուխ անցած՝ դուրս եկավ թշնամու դեմ և Նևայի ափին մեծ ջարդ տվեց։ Այդ հաղթանակի համար ժողովուրդը նրան տվեց Նևսկի անունը...

Ալեքսանդր Նևսկին հայրենասեր իշխան էր և չէր կարող հանգիստ մնալ, երբ հիմա էլ ռուսական հողերի վրա են հարձակվել գերմանական ռազմիկ-հողատերերը, որոնք ասպետներ էին կոչվում։ Եվ նա կոչ արեց ժողովրդին՝ պաշտպանել հայրենի հողը։

— Դուք պաշտպանում եք ոչ միայն Նովգորոդը, այլև ամբողջ Ռուսիան,— ասում էր Նևսկին ժողովրդին։— Եթե մենք կորցնենք Նովգորոդը, այլևս մեր ոտքի տակ հող չենք ունենա, որպեսզի հետագայում կարողանանք Ռուսիայից դուրս շպրտել թաթար-մոնղոլներին։

Նովգորոդի ատաղձագործներն ու դարբինները թողեցին իրենց խաղաղ աշխատանքը և զենք վերցրին։ Գյուղացիները զինվեցին կացիններով ու տեգերով և միացան զորքին։ Ժողովրդական ջոկատներ եկան նաև Վլադիմիրից ու Պսկովից։ Ալեքսանդր Նևսկին գլխավորեց ռուսական բանակը և դուրս եկավ գերմանական ասպետների դեմ։ Դա 1242 թվականին էր։ Զորքերը հանդիպեցին Չուդ լճի վրա։ Գարունը նոր էր բացվել, և սառույցը դեռ ամուր էր։ Թշնամին որոշել էր սեպի նման մտնել ռուսական զորքի մեջ, բաժանել այն երկու մասի և ոչնչացնել։ Ասպետները ձիերով էին, զինված ծանր սրերով ու նիզակներով։ Թե՛ իրենք և թե՛ ձիերը պաշտպանված էին զրահներով։

Ալեքսանդր Նևսկին հասկացավ թշնամու մտադրությունը և իր ընտիր, լավ զինված ուժերը դասավորեց զորքի ծայրերում, իսկ իր գունդը թաքցրեց դարանում։ Երբ ասպետները խորացան ռուսական զորաշարքերի մեջ, երկու կողմից շրջապատվեցին։ Իշխանի գունդը դուրս եկավ դարանից և նետվեց նրանց վրա։ Սկսվեց դաժան ճակատամարտը։ Շաչում էին սրերը և զարնվում իրար, կացինները իջնում էին վահաններին ու զրահներին, ձիերը սայթաքում էին սառույցի վրա և ընկնում։ Վերջապես ասպետները փախուստի դիմեցին։ Ռուսները նրանց քշեցին այն տեղերը, ուր սառույցը բարակ էր։ Թշնամու զինվորները ընկնում էին ջուրը, և երկաթյա ծանր զրահները նրանց իսկույն սուզում էին լճի հատակը։

Չուդ լճի վրա տեղի ունեցած ճակատամարտը պատմության մեջ հայտնի է «Սառցամարտ» անունով։

Ալեքսանդր Նևսկու գլխավորությամբ ռուսական զորքի տարած հաղթանակը կանգնեցրեց արևմտյան զավթիչների հարձակումը և նրանցից փրկեց հայրենի հողը։

Լրացավ ռուս մեծ զորավար Ալեքսանդր Նևսկու մահվան 700 տարին։

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

## «ՊԻՈՆԵՐ»

ԱՄՍԱԳԻՐԻՆ

*12 ամիսը — 2 ռ. 40 կ.*

*6 ամիսը — 1 ռ. 20 կ.*

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ

*1964 թվականին*

*դուք կկարդաք*

Հայ գրողների նոր պատմվածքներն ու բանաստեղծությունները:

Հեքիաթներ և վրույցներ:

Թե ինչով վերջացան Ջելսոմինոյի արկածները խաբեբաների աշխարհում:

Շարունակաբար կտպագրվի «Երկնագույն հուլունք» վիպակը:

Դպրոցականների ստեղծագործությունների բաց մրցանակաբաշխություն:

*«Զգիտես՝ իմացիր» բաժնում՝*

Անհետացած աշխարհամասը՝ Ատլանտիդան:

Աֆրիկայի թզուկները:

Եղել են արդյոք համաշխարհային ջրհեղեղներ:

Անտարկտիդայի գաղտնիքները:

Պրոֆ. Գիտունյանի ճամպրուկից: